

# ՏԱՍՆԵՐԵՔ ՏԵՐԵՎ

(Մի աղավնու օրագիր)

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Դրանք խոշոր-խոշոր տերևներ են, թզենու դեղնած տերևներ։*

*Տասներեք հատ են։ Ես դրանք գտա տանիքի տակ, ջրհորդանի ժանգոտած թիթեղի ճեղքում, երբ վարպետները հորդառատ անձրևից հետո նորոգում էին մեր տանիքը։*

*Դրանք դարսված էին իրար վրա, հենց այդ էր, որ գրավեց իմ ուշադրությունը։ Ես մեկիկ-մեկիկ սկսեցի զննել տերևները և, հանկարծ, ինչպես պապիրուսների պատառիկների վրա, նշանագրեր նշմարեցի։*

*Դուք պիտի հավատաք ինձ, աշխարհում դեռ ո՛չ մի հնագետի ու լեզվաբանի չի հաջողվել հանդիպել այդպիսի նշանագրերի։ Դրանք գրված են մանրիկ-մանրիկ, ձյան փաթիլների նմանությամբ, և երբ խոշորացույցի օգնությամբ ես խորացա նրանց մեջ, կտուցի հետքեր նկատեցի։*

*Աղավնագրեր էին։*

*Դա մի աղավնու օրագիր էր...*

## ԱՌԱՋԻՆ ՏԵՐԵՎ

*Ես այսօր արթնացա մի քաղցր երազից. թվում էր, թե մայրիկիս հետ էի, թվում էր, թե մայրիկս դեռ կա... Մենք նստած էինք կողք-կողքի, մեր վարդագույն բնախորշում, որի տակ ողկույզներ կան քանդակված։ Նա գգվում էր ինձ իր մայրական շնչով, և ինձ թվում էր, թե մայրիկս դեռ կա...*

## ԵՐԿՐՈՐԴ ՏԵՐԵՎ

*Այս քաղաքը կար և մայրիկիս ժամանակ. և՛ այս հսկա հրապարակը, և՛ ավազանը իր ձկնագլուխ շատրվաններով, և՛ այս սյունազարդ շենքերն ու կամարները, և՛ աշտարակը, որի վրայի կլոր աչքի մեջ պտտվում է ժամանակը։ Մայրիկս ասում էր՝ դա ժամանակի աչքն է։ «Մեր աչքերը,— ասում էր նա,— մի օր կփակվեն, բայց ժամանակի աչքը հավերժ պիտի նայի այս հրապարակին»...*

*Օ՜, ինչե՜ր չգիտեր մայրիկս...*

## ԵՐՐՈՐԴ ՏԵՐԵՎ

*Շատ փոքր էի, երբ մայրիկիս հետ մի կերպ թև-թևի բարձրացա սիրուն աշտարակն ի վեր, որտեղ ծածանվում է վառ դրոշակը։ Ինչքա՜ն գեղեցիկ էր աշխարհն այնտեղից. առաջին անգամ տեսա դաշտերը, անտառներ տեսա և հեռաստաններ, կանաչ բարդիներ և հորիզոնը՝ ոսկե մշուշում...*

*Ու մշուշից վեր, կապույտ երկնքում ադամանդաշող գագաթներ տեսա...*

*Մայրիկս ասաց՝ դա Արարատն է։*

## ՉՈՐՐՈՐԴ ՏԵՐԵՎ

*Մայրիկս ասում էր, որ դա սրբազան լեռնակատար է և որի վրա առաջին անգամ իջել է սուրհանդակ մեր նախամայրը, և այդ պատճառով ձյունափետուր են աղավնիները։*

*Մայրիկս ասում էր, որ այս հովիտն ու աշխարհն ամբողջ ծածկված է եղել ջրով և ջրերի վրա մի ուղեկորույս ու տագնապահար նավակ է եղել, և ոչ մի ցամաք։ Միայն Արարատի գագաթն է չոր եղել, և նավակը կանգ է առել Արարատի գագաթին։*

*Ու բաց է թողել նավակի մարդը մեր նախամորը, որ նա թևածի ջրերի վրա, որ մի բարի լուր բերի։*

*Եվ նախամայրը մեր թևածել է ջրերի վրա յոթն*



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Լույս է տեսնում
1923 թվականից




№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1966 Թ.

*օր, յոթ գիշեր, վերադարձել է՝ ձիթենու կանաչ ճյուղը կտուցին:*

*Կորստյան մատնված, փոթորկահույզ մարդկության համար շեն ու լի կյանքի և խաղաղության սուրբ լուրն է բերել մեր նախամայրը:*

*Բայց մայրս չէր հիշում այդ մարդու անունը. հին պատմություն է, գուցե և հեքիաթ...*



ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ.

*Ես հիշում եմ իմ առաջին թռիչքը. ես վախենում էի նույնիսկ իջնել ավազանի շուրջը, որտեղ զբոսնում էին մերոնք և մարդիկ. ես վախենում էի անվերջ սուրացող մեքենաներից և ավելի շատ հենց այն մարդկանցից: «Մի՛ վախենա, աղավնիկս, — ասում էր մայրիկս,— չէ՞ որ քեզ պատմել եմ՝ մեր նախամայրը մարդկանց նախանձոր սիրելին է եղել: Օ՜, մի՛ վախենա, քեզ չեն վնասի»...*

*Ու ես սիրտ առա, դողդոջ թևերով թափ առա, թռա ու տոտիկներով առաջին անգամ հպվեցի գետնին: Մայրիկս հետս էր: Օ՜, ինչքա՜ն բարձր էր երկինքն այնտեղից, և աշտարակը, և մեր վարդագույն, տաք բիվախորշը... Մեր շուրջը եռում էր հրապարակը, աղմուկ էր, արև և տաք ասֆալտին գարեհատիկ էր շաղ տալիս պառավ այն մարդմայրիկը... Ես էլ կտցեցի, մեկ հատ, երկու հատ... Մայրիկս հետս էր, և կտցում էինք մենք գգվանքով, ես ու մայրիկս և մեր ողջ ցեղը: Եվ արեգակը շողում էր պայծառ, և ավազանի պաղ շատրվանը գոհար շիթեր էր սփռում մեզ վրա...*

*Ու հանկարծ տեսա մորս կարմրավուն կտցարմատի վրա շողուն կաթիլներ: Թվաց ինձ, որ այդ շատրվանից է, բայց երբ մայրիկս համբուրում էր ինձ, զգացի, որ իր արցունքներն էին...*

*Մայրիկս լալիս էր ուրախությունից:*

*«Տեսա՞ր, բալիկս,— ասում էր նա ինձ,— տեսա՞ր, որ մարդիկ բարի են»...*

*Օ, ինչե՜ր չգիտեր իմ մայրիկը...*

ՎԵՑԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ.

*Բայց տխրում էի: Թեև արև կար, և գարնանային, և ջրավազան, բայց տխրում էի: Թեև մայրիկս հետս էր ամենուր, բայց տխրում էի: Ես տեսնում էի հենց իմ նմանին՝ ընկերոջս հետ թև-թևի տված, կտուց-կտուցի, կապույտ անհունի մեջ սավառնելիս: Նախանձում էի, սակայն վախենում կապույտ անհունից: Մայրիկս զգաց.*

*«Դու մի՛ վախենա լուրթ անհուններից,—ասում էր նա ինձ.— եթե վախենաս, ոչ որ մեր ցեղից քեզ չի սիրելու և դու հավիտյան մենակ կմնաս: Քաջ, համարձակ էր մեր նախամայրը: Զգույշ ա-*





բքին, ցուրտ անհուններին, և քեզ կսիրեն՝ ընկեր կունենաս: Չէ՞ որ, քույրիկս, ես ծերացել եմ, արյունս օրեցօր սառչում է, արդեն և շուտով պիտի արևին երթամ՝ նրա ջերմ գրկի մեջ տաքանալու...

Այսպես էր ասում իմ խեղճ մայրիկը: Բայց մի օր անդաստանային նա թռավ ուրիշ ընկերների հետ ու էլ չդարձավ...

Ամբողջ երեք օր անձրևում էր: Ես լալիս էի...

Արև չկար. սև-սև ամպերը ինձ բաժանել էին պայծառ արևից: Մայրիկս երևի տաքանում էր ջերմ արևի գրկում, ես լալիս էի...

ՅՈԹԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ.

Ինչե՜ր չէր պատմում լուրթ անսահմանի և հավերժական արևի մասին իմ լավ մայրիկը: Պատմում էր նա ինձ, որ արեգակը իր ասեղներով վառ ու գույնզգույն գոհարներ է ցրում ճերմակ ամպերի բարձերի վրա, որտեղ հանգստանում ու ջերմանում են ծեր մայրիկներն ու հայրիկները:

Ու երազ տեսա. ես հասել էի ճերմակ բարձերին, ես թափվել էի նրանց ձյունափայլ փրփուրների մեջ և կտցում էի վառ գոհարները. և նրանք քաղցր էին ու անուշահամ ինչպես նորահաս բալի հատիկները...

Բայց ես մայրիկիս այնտեղ չգտա... Ու երբ արթնացա, երկինքն հեռու էր ինչպես մայրիկս, որ ջերմ էր անցած ամռան արևից...

Ինչպե՞ս պիտի ապրեմ այսպես ես մենակ: Օ՜, ես կմեռնեմ մենակությունից. ինչու մայրիկս ինձ էլ չտարավ արեգակի մոտ... Վաղը կթռչեմ, էլ չեմ դիմանա: Վաղը կթռչեմ ու երկինքներում կփնտրեմ իմ խեղճ կորած մայրիկիս...

Ինչքա՜ն զվարթ է լուսինը այսօր, ինչքա՜ն խոր է քաղաքը քնած, աստղերը ասես արտասվում են լուռ: Որտե՞ղ ես, մայրիկ...

ՈՒԹԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ.

Սիրտս ճնշվում է ուրախությունից. ես այսօր թռա, ես այսօր եղա լուրթ անհուններում, հասա ամպերին ու, երբ թարմաշունչ ամպամշուշում ես փնտրում էի իմ լավ մայրիկին, հանկարծ իմ կողքին լսեցի ծանոթ թևաբախյուններ: Թվաց մայրիկս է, ու երբ շուռ եկա...

Օ՜, սիրտս ճնշվում է ուրախությունից. ես էլ մենակ չեմ. ես տեսա նրան՝ իմ ընկերուհուն: Նա գեղեցիկ է, գեղեցիկներից, կապույտ մաքուր քաղցրաշի նման փափուկ, թավշյա, որ վառվռուն է, ասես նոր բացված կակաչի նման... Ճերմակ է ինչպես սրբազան լույսն՝ սեգ Արարատի ձյուներն ապամանց, և այնպես նման մայրիկիս պատմած հավերժական մեր նախամայրը...

Եվ նա ինձ ասաց՝ կարծես թևելով. «Սիրեցի ես քեզ, համարձակ կարմիր, էլ չեմ բաժանվի քեզնից հավիտյան»:

Իսկ ես ասացի. «Փնտրենք մայրիկիս»:

Եվ ամբողջ օրը մենք փնտրում էինք կորած մայրիկիս՝ լուրթ երկինքներում, ծառաստաններում, հորիզոններում: Վերջապես իջանք քաղաքի վրա: Ոչ, էլ մենակ չեմ, կարծես գտել եմ անուշ մայրիկիս: Նա ինձ անվանեց «սիրելի կարմիր», սիրտս ճնշվում է հպարտությունից...











Մայրիկ, ես երբեք քեզ չեմ մոռանա, ինչպես որ գտած իմ ընկերուհուց էլ չեմ հեռանա:

Թե չլսեի ես քո խորհուրդը, թե չփնտրեի ես քեզ, իմ մայրիկ, սիրտս, հենց հիմա, չէր հեռա այսպես երջանկությունից:

ԻՆՆԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ

Այսօր մենք նորից թռանք արևոտ քաղաքի վրա: Ամբողջ գիշերը միասին էինք իմ ու մայրիկիս բնախորշում, որի տակ ողկույզներ կան փորագրված: Հասկ, ժպտում են և ողկույզները փարթամ հովիտի, և՛ այն վազերի, որ փաթաթված են վարդագույն քաղաքի պատշգամբներին: Այդպիսի մի լավ պատշգամբ գտանք քաղաքի ծայրում ու կտուց-կտուցի ճաշակում էինք, մեկ-մեկ գեղգեղում, երբ հանկարծ աչքս ընկավ այդ շենքի բաց լուսամուտին: Այնտեղ կանգնած էր մի երիտասարդ՝ երկար մազերով և խորը, երազուն, թախիծ հայացքով: Եռոտանի կար նրա դեմ կանգնած և վրան կտավ, ու նա վրձինով նկարում էր յուղ, երբեմն մոտենում բաց լուսամուտին և նայում հեռուն՝ բարդիներից վեր բացված երկնքին: Երբեմն երգում էր, և երգը նրա բարձր էր, հարազատ: Մենք լսում էինք, կտուց-կտուցի ճաշակում բարձր խաղողը, երբ նա մեզ տեսավ... Իմ ընկերուհին վախեցավ հանկարծ, իսկ ես ասացի. «Օ՜, մի՛ վախենա, իմ աղավնյակս, չէ՞ որ ես երեկ գիշերը ամբողջ քեզ պատմել եմ, որ մեր նախամայրը մարդկանց նախահոր սիրելին է եղել: Նրանք մեզ չեն վնասի»...

Ու հենց այդ պահին նա էլ մեզ ժպտաց, հետո շուռ եկավ, շուռ տվեց կտավը ու, մեզ նայելով, ինչ-որ գծում էր պաստառի վրա, բարակ վրձինի նուրբ հարվածներով, և նկարում էր, և բարձր ժպտում: Եվ ես ասացի. «Տեսա՞ր, սիրելիս, տեսա՞ր, որ մարդիկ բարի են»...

Եվ նա ինձ կրկնեց. «Ճիշտ որ բարի են»...

Օ՜, իմաստուն էր իմ լավ մայրիկը...

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ

Այսօր մենք նորից եղանք այդ բաց լուսամուտի մոտ, երիտասարդին այնտեղ չգտանք, բայց լուսամուտին նա շուռ էր տվել դեպի պատուհանը և, այնպես, կտավի վրա մենք հանկարծ տեսանք հենց մեզ, ինչպես թափանցիկ լճի հայելում: Մենք նստել էինք խաղողի վազին, թև-թևի հպած, կտուց-կտուցի, մեզ բոլորել էին կանաչ տերևներ, որոնց հետևից տաք ժպտում էր ոսկյա արևի գունդը:

Մենք շատ զարմացանք, այդ ե՞րբ նկարեց և ինչի համար: Բայց ես հիշեցի իմ լավ մայրիկին ու այսպես ասացի զարմանքից ապշած իմ ընկերուհուն. «Դու մի՛ զարմացիր, իմ աղավնյակս: Նորայան մոռացված փոթորկահույզ մարդկության համար շեն ու լի կյանքի և խաղաղության սուրբ լույսն է բերել մեր նախամայրը»:

Եվ նա ինձ ասաց. «Դու ինչքան ճիշտ ես, քաջս, կարիճս» ..

Իսկ ես ասացի. «Ոչ, իմաստուն էր իմ լավ մայրիկը»...

ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ

Ուր էր, մայրիկս մի անգամ երևար ու տեսներ նա մեզ այդ շառավոնի հակինթ շողերով, պայծառ արևի շողերով շաղված: Նորից աշուն է հրապարակում, մրգերը հասնում են, սպասում, վարդագույն շենքերը պեծին են տալիս, աշտարակի վրա վառ դրոշակը ծածանվում է վեր, և մարդիկ, մարդիկ գրկում են մեր բույրը, ժպտում: Եվ սկզբնում բարի պատանին գարնանից է սիրում ամբողջին, իսկ մենք կացում ենք, ուրախ գգվում, բայց մարդկանց տների մոտով և տներից էլ ճանաչում նրանց մեծին ու փոքրին: Տները նման են նմանակներին և, կրված իրենց զարդանկարներն, ծխում են ահ ու տաք արևի տակ տաքանում իրենց սառ յա արյունը: Մանուկները ուրախ թռչկոտում են մեր շուրջը, թեև նրանց մեջ էլ կան այնպիսիները, որ ցանկանում են բռնել մեր թևից և կամ մի վայրկյան տանել տան մեջ: Այնուամենայնիվ դա ցանկալի չէ, թեև նրանցից մենք չենք վախենում: Ոչ, չենք վախենում, մենք մեր պատկերը տեսնում ենք նրանց կրծքերի վրա, ցուցափեղկերում, և շարքերից վեր, երբ որ անտակ շքերթ է լինում:

Բայց, այսօր, մենք... Ինչ-որ մի սուր, սև ածուխի պես փայլուն աչքերով մի փոքրիկ տղա այնպես էր նայում իմ աչքերի մեջ, որ ես ակամա հանկարծ ցնցվեցի...



97-Ա. Հ.

Լավ էր, որ ընկերուհիս ոչինչ չիմացավ։
Օ՜, ոչ, ամոթ է, մարդիկ բարի են...
Այդպես էր ասում իմ լավ մայրիկը։

## ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ.

Այսօր նա հանկարծ երևաց նորից։ Հենվել էր սյանը, ավազանի մոտ, աչքը՝ ինձ վրա։ Ի՞նչ էր ցանկանում։ Մի անգամ նույնիսկ ինձ թվաց, որ նա թեքվեց դեպի ինձ, բայց գուցե թվա՞ց...

Ինձ դուր չեն գալիս նրա աչքերը...

Մի՞թե չի զգում այդ իմ հայացքից, դողդոջ քայլվածքից։ Մի՞թե չի զգում, որ սիրտս զարկում է, որ ես տխրում եմ և աշխատում եմ հեռու մնալ։

Մի՞թե չգիտի, որ վեհ, սրբազան լեռնակատարին առաջին անգամ որպես սուրհանդակ և բարի լուրի բաց համբավաբեր, իջել է ազնիվ մեր նախամայրը և այդ պատճառով ձյունափետուր են աղավնիները։

Չգիտի՞ նա, որ փոթորկահույզ մարդկության համար շեն ու լի կյանքի և խաղաղության սուրբ լուրն է բերել մեր նախամայրը։

Աղավնի մայրս գիտեր, որ բարի՜, բարի են մարդիկ։ Մի՞թե չգիտի, որ ինքը մարդ է, և մարդը պիտի չարիք չգործի։

Բայց... այսօր մի անգամ նույնիսկ ինձ թվաց, որ նա թեքվեց ինձ վրա, բայց գուցե թվա՞ց...

Օ՜, ոչ, ամո՜թ ինձ, մարդիկ բարի՜ են. այդպես էր ասում իմ լավ մայրիկը...

## ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՏԵՐԵՎ.

Ամբողջ գիշերը երազիս մեջ մայրիկս ինձ հետ էր։ Թվում էր ինձ, որ մայրիկս դեռ կար։ Մենք նստած էինք հին օրերի պես, թև-թևի հպած, ծանոթ, հարազատ մեր բնախորշում։ Նա գգվում էր ինձ մայրական շնչով, և ինձ թվում էր, մայրիկս դեռ կա։

Հանկարծ արթնացա, տեսա ես նրան՝ իմ ընկերուհուն, կտուցը՝ կտցիս։ Եվ նա ինձ ասաց. «Դու այդ գիշերը տառապում էիր, դու ջերմ ունեիր։ Ի՞նչ է պատահել, քաջս, կարիճս»...

Ես նրան միայն քաղցր ժպտացի։

Եվ նա ինձ ասաց. «Սիրեցի ես քեզ, աննման կարիճ, ես չեմ բաժանվի քեզնից հավիտյան»։

Ու հենց այդ պահին մեր աշտարակի լուռ ժամացույցը զարկեց հինգ անգամ։

Եվ ես, չգիտեմ ինչու, ասացի. «Մայրիկս ասում էր դա ժամանակի աչքն է։ Սիրելիս, մեր աչքերը, ասում էր նա, մի օր, մի օր կփակվեն, բայց ժամանակի աչքը հավիտյան պիտի նայի այս հրապարակին»...

Իսկ նա զարմացած, լուռ նայում էր ինձ։

«Այսօր ես գուցե գտնեմ մայրիկիս»,— ասացի հանկարծ։

«Օ՜, դու ջերմ ունես քա՞ջս, կարի՜ճս»,— ասաց նա թախծով։

Իսկ ես ժպտացի։

Ու հանկարծ նրա սիրող աչքերում արցունքներ տեսա...

---

Այստեղ ընդհատվում է աղավնու օրագիրը։ Թե ի՞նչ է պատահել նրան, չեմ կարող ասել, որովհետև ես էլ նրա պես հավատում եմ մարդկանց բարությանը։

## ՁՄԵՌ



Ձյո՜ւն է գալիս, ձյո՜ւն է գալիս,
Այնպես հանգիստ, այնպես օրոր։
Ճերմակ երազ, առաջին ձյուն,
Իջի՛ր, իջի՛ր մեղմ ու անդորր...
Իջի՛ր քնքուշ համբույրի պես՝
Մանուկների ալ թշերին







Ու մի ճերմակ թիթեռ կախիր
Սոսի սևուկ թարթիչներից...
Իջի՛ր, դարձիր դու ձնե մարդ,
Դարձիր փափուկ ձնագնդի,
Ճերմակ երազ, ճերմակ օրոր,
Ձնգո՜ւն ծիծա՜ղ մանուկների...



ԼԵՎՈՆ ՍԱՐԳՍՅԱՆ

(Երևանի № 2 գիշերօթիկ դպրոց)

# ԱՐՏԱԿԻ ՎԻՇՏԸ

*ԱՐԵՎԻԿ ԱՎԱԳՅԱՆ*

*Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ*

Լավն է Արտակենց բակը, ազնիվ խոսք, մանավանդ հիմա, գարնանը։ Երբ երեք տարի առաջ նրանք նոր բնակարան ստացան, բակում ոչ մի ծառ չկար։ Բնակիչները խորհրդի հավաքվեցին, մի ակնոցավոր պապիկ այսպես էլ ասաց.

— Սիրելի, նոր դրկիցներ, եկեք մեր բակում մրգատու ծառեր տնկենք։ Գարնանը փշատենին բույր կտարածի, իսկ աշնանը փշատ կտա փոքրիկներին, ընկուզենիները կմեծանան, ստվեր կձգեն։ Հովանու տակ ծերուկներս կհանգստանանք, իսկ աշնանը երեխաները նրանց ճյուղերից ընկույզ կհավաքեն։

Փշատի, ընկույզի հեռանկարը շատ հուզեց երեխաներին, նրանք լայն բացած աչքերով մեծերին էին լսում։ Բայց, ա՜յ զարմանք։ Պատկերացնո՞ւմ եք, Վաչիկի ու Վահիկի մայրիկը, Դավիթի հայրիկը, նույնիսկ Նունեի ու Կարինեի տատիկը անհանգստացան... Հանկարծ երեխաները ծաղկած ծառերի ճյուղերը չպոկե՞ն։ Ավելի լավ չէ՞ անպտուղ ծառեր տնկել։

Բայց ակնոցավոր պապիկը նայեց խմբված փոքրիկներին, ժպտաց ու ասաց.

— Բակը երեխաներինն է, նրանք էլ թող վճռեն։

Ու վճռվեց. վճռվեց, իհարկե, փշատի, ընկույզի օգտին։ Ակնոցավոր պապիկը միանգամից դարձավ բոլոր փոքրիկների սիրելին։ Ծառատունկի ժամանակ նրանք պապիկից ոչ մի քայլ չէին հեռանում։ Պտղատու ծառերի հետ բակի երկայնքով պապիկը բարդիների շիվեր էլ տնկեց։

— Բարդին հայ բնաշխարհի զարդն է, Արարատյան դաշտի հմայքը,— բացատրեց նա փոքրիկներին,— առանց նրա մեր բակը գեղեցիկ չի լինի։

Այս ամենը չորս տարի առաջ էր, երբ Արտակը դեռ տառերն էլ չգիտեր։ Իսկ հիմա... Բարդիները ծածկված են աչք շոյող կանաչով։ Ու քանի կանաչը շատանում է, այնքան ավելի նկատելի է դառնում շարքի ամենաեզրի բարդին։ Նա չի կանաչում։ Մեծերը անհանգստացած մոտենում են նրբիրան բարդուն,ափսոսանքով գլուխները տարուբերում։ Հապա երեխաները... Ինչպե՜ս են ափսոսում, մոտենում են, զննում, կարծիքներ փոխանակում։ Երևի հողում վնասակար որդեր կան, երևի արմատը քարերի է դե՛մ առել... Իսկ Վաչիկը, որ հեքիաթներ շատ է սիրում, միշտ նույնն է կրկնում. «Ծառի արմատի մոտ հին մետաղադրամ է թաղված, ու ժանգից խեղճ ծառը չորանում է»։

Արտակը ոչ մի կարծիք չի հայտնում, խոսակցությունը ասես լսում է հենց այնպես, կողքից, ու լուռ մնում։ Ընկերների հայացքը կարծես ասում է՝ ի՜նչ անտարբերն ես։ Չե՞ս մտածում մատղաշ բարդու մասին։

Չի՞ մտածում։ Գիտե՞ն արդյոք, որ ամենից ավելի նա՛ կուզենար ծառը կանաչեր։ Ախ, այդ ծառը... Չորս տարեկան էլ չկա։



* * *

... Բակում այն ժամանակ երեխաներ չկային։ Ծուրջը ձյուն էր։ Սպիտա՜կ-սպիտա՜կ։ Այնպե՜ս ցանկություն կար խաղալ որևէ մեկի հետ։ Ու Արտակը ծանծրույթից հաճելի զբաղմունք գտավ. նորատունկ բարդիներից նա ոտքով հարվածում էր և կանգնում տակը։ Մատղաշ ծառի բարալիկ ճյուղերից ձյունը ներքև էր մաղվում ու թափվում Արտակի գլխին, ուսերին։ Հենց այդ ժամանակ հնչեց անծանոթ քեռու ձայնը.

— Ի՞նչ ես անում, մի՛ խփիր։ Դու նրանից երեք անգամ մեծ ես։

Արտակը անսպասելիությունից և օտար մարդու խիստ ձայնից շփոթված, ակամա հայացքով չափեց բարդին։ Բարդին բարձր էր, երկար։

— Այո՛, այո՛,— խստորեն շարունակեց անծանոթը,— երեք անգամ փոքր է քեզանից։

Անծանոթ քեռու նախատինքի՞ց, թե՞ ցրտից, Արտակի թշիկները կաս-կարմիր էին։ Ամոթից, զարմանալի բան, նա նույնիսկ թվաբանական հաշվում արեց։ Ինքը 12 տարեկան է, ծառը՝ չորս, ինչպես էլ անծանոթ քեռին խսկույն որոշեց։ Արտակի ականջներն այրվում էին, իսկ անծանոթը նախատում էր.

— Հազիվ չորս տարեկան է, և դու խփում ես։ Սառած արմատները հողում կշարժվեն, մազարմատները կկտրվեն ու գարնանը ծառը չի կանաչի։

Անծանոթը գնաց. հաճելի խաղն ընդհատվեց։ Արտակն այլևս երբեք իր ուրախ խաղը չկրկնեց։

Ահա և գարուն է։ Ինչ լա՜վ է, որ բարդիները կանաչեցին, բայց այս մեկը... Արտակը շա՜տ-շա՜տ է մտածում։ Երեկոները, անկողնում պառկած, նրան երբեմն թվում է, որ ոչ թե չորացած ծառն է կանգնած շարքում, այլ իրենից շատ փոքրիկ մի տղա։ Տղան Արտակի հարվածներից լաց է լինում, բայց կապած է մնում տեղում, չի կարողանում պաշտպանվել, չի կարողանում փախչել։

Արտակը որոշում է առավոտն իսկ գնալ կանգնել բակում ու ընկերների առաջ բարձր ձայնով ասել.

— Ոչ մի որդ, ոչ մի մետաղադրամի ժանգ արմատները չեն վնասել, այդ ե՛ս, ե՛ս եմ դալար բարդին չորացրել։— Բայց երբ լույսը բացվում է, բակ է դուրս գալիս ու կանաչ բարդիների շարքում տեսնում չորացած ծառը, նորից լռում է։

Մինչդեռ եթե պատմեր, բոլորը կիմանային և գալիք ձմռանը ոչ մի երեխա ոտքով ձյունոտ ծառին չէր հարվածի, ոչ մի ծառ գարնանը չոր չէր մնա։

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

*Վաղ առավոտ*
*Երկու ծիտիկ*
*Ծրջում էին տոտիկ-տոտիկ,*
*Մեր շենքի մոտ,*
*Մայթին ձյունոտ.*
*Փնտրում էին մի կտոր հաց*
*Կամ մի հատիկ։*
*— Ո՜ւ, — փողոցով*
*Բուքն էր սուրում,*
*Խենթ քրքիջով ու սուլոցով*
*Վախեցընում խեղճ ծտերին։*
*Բայց ընկերներն այդ մտերիմ*
*Ծրջում էին նորից անվերջ*
*Ու թռչկոտում,*
*Քուջուջ էին անում ձյան մեջ*
*Ու ոստոստում։*
*Ու երբ հանկարծ*
*Մայթին սառած*
*Գտնում էին մի կտոր հաց.*



# ՊԱՏՄՎԱԾՔ ԿԱՊՈՒՅՏ ՀՐՋԱԶԳԵՍՏԻ ՄԱՍԻՆ

*ԱՐԱՔՍՅԱ ՋՈՓՈՒՐՅԱՆ*

Ես այս գիշեր ծնվեցի։ Դեռ երեկ աշխարհը չգիտեր իմ մասին ու ես՝ աշխարհի։ Ես գտնվում էի աշխարհի մի ինչ-որ տեղում, մի ինչ-որ խանութի վաճառասեղանի վրա, որի մոտ հերթի էին կանգնել ու աղմկում էին կապույտ հրջազգեստների սիրահարները։ Ես հիմա կապույտ հրջազգեստ եմ ու գիտեմ թե՛ իմ և թե՛ աշխարհի մասին։ Դեռ երեկ գտնվում էի խանութի վաճառասեղանին դրված կապույտ կտորի մի ահագին փաթեթի մեջ։ Ծամփիկի մայրիկը երկու մետր գնեց այդ կտորից։ Ու ես ծնվեցի, դարձա հրջազգեստ Ծամփիկի համար։ Ես կապու՜յտ, կապույտ եմ ու վրաս էլ հազարավոր արևիկներ կան նկարված։ Եվ հիմա, երբ



Քիչ հետո վարպետ կուղբի ականջին հասան մկնային ուրախ ծվծվոցներ: Օգնության էին գալիս երկու աշխույժ մկնիկներ՝ Մստոն ու Ճստոն. երկուսն էլ սպորտ սիրող ու լավ մարզված: Մստոն պատին դրեց չորրորդ քարը:

— Երեքին գումարած մեկ՝ հավասար է չորսի,— ասաց փայտփորիկն ու քաշեց չորրորդ գիծը:

4



ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՏԱՐՈՆ

## ԱՐՋՈՒԿՆԵՐԸ

Ջյուն է գալիս, և արջերը
Պար են բռնել ծյան ներքո,
Դիմավորում են ձմեռը
Ուրախ ճիչով ու երգով։

Փաթիլները բռնում թաթով
Ու բերաններն են տանում,
Հարվածում են իրար հերթով,
Ճիչ ու աղմուկ են հանում։

Ինչպես ուրախ չլինեն, երբ՝
Ձմեռը քուն է տալիս,
Իսկ արջերին, ինչպես գիտեք,
Հենց քնելն է դուր գալիս։

## Ն Ա Զ Ե Ն Ի Ն

ԶԱՐԶԱՆԴ
ԴԱՐՅԱՆ

Համբիկի փիսիկն իսկական է, ոչ թե խաղալիք. Երկարապոչ, թավամազ մի կատու, անունն էլ՝ Նազենի, համարյա աղջկա անուն։ Սրա մասին շատ բան եմ պատմելու, բայց քանի դեռ չեմ սկսել, ասեմ, որ երկար, սպիտակ բեղեր ունի և աչքերից մեկը կանաչ է, մյուսը՝ խատուտիկ։ Համբիկն, իհարկե, չգիտի, որ այդպիսի կատուներ մի ժամանակ Վանում էին լինում, որ նրանց շագանակագույն մազերը մթան մեջ կայծեր էին արձակում ու, երբ գիշերով կտուրից-կտուր էին թռչկոտում, ասես կրակի փնջեր լինեին։ Հետո, որ աղջիկը մեծանա, կսովորի, հայրիկն ու մայրիկը Վանա կատվի երգն էլ կսովորեցնեն նրան, որ վերջանում է այսպես.



## ՓԱԹԻԼՆԵՐ

Փաթիլները շատ ուզեցին
Ծաղիկներին նմանվել
Ու երկնքից ցած թափվեցին
Ինչպես ճերմակ ծաղիկներ։

Մեկը մեկին ասաց այսպես.
— Ես վարդի եմ նման շատ։
— Ես մեխակ եմ։ –Լոտոս եմ ես։
— Իսկ ես՝ ճերմակ մի շուշան։

Վիճում էին օդում այդպես
Փաթիլները երկնային։
... Բայց երբ գետնին հասան, արդեն
Ծաղիկները չկային...



## ԻՄ ԳԱՌՆՈՒԿԸ

ՀԱՅԿԱՄԱՐ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*Ձյունը ծածկեց տանիք ու բակ,*
*Դաշտ ու սարեր հագան ճերմակ։*
*Իմ գառնուկը խեղճ-խեղճ մայեց,*
*Տխուր-տրտում դեմ քիս նայեց։*
*— Իմ գառնուկ ջան, ի՞նչ ես տխրել.*
*Ես քեզ երբեք չեմ մոռացել։*
*Տե՛ս, փորել եմ խորունկ մի փոս*
*Ու պատրաստել համով սիլոս։*
*Դե շուտ մտիր գոմը քո տաք,*
*Մինչև գարուն դուրս չգաս բակ։*

Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

Ձերիկ-պերիկ[1] աստառ ունեմ,
Սամուր մորթե մուշտակ ունեմ,
Աղաներաց մուշտակն եմ,
Խաթուններաց շուշտակն[2] եմ...

*Հիմա իմացա՞ք, թե ինչ է նա, այդ վանա կատուն։ Ի՞նչը կարող է ավելի թանկ լինել ու մարդուց անբաժան, քան աղայի մուշտակն ու խանումի ոսկեկար շուշտակ-թաշկինակը։*

1. Մանր ու մեծ։
2. Թաշկինակ։

*Տատն էլ իր հերթին «Ուժով կատվի» զրույցը կանի Համիկին։ Դուք նույնպես չեք լսել, չէ՞։ Մի երկու խոսքով ես ձեզ կպատմեմ, քանի դեռ բուն նյութին չեմ անցել։*

1

*Մի տղա առավոտը տանից դուրս է գալիս լվացվելու, տեսնում է առուն սառել-չորացել է։ Ոտքով խփում է, սառույցը չի ջարդվում, ասում է.*

*— Դու ամենաուժեղն ես, սառույց։*





Սա թե՝
— Որ ուժեղ լինեի, արևն ինձ չէր հալեցնի։
Տղան գնում է արևի մոտ։
— Դու ամենաուժեղն ես, արև։
— Որ ուժեղ լինեի, ամպը երեսս չէր ծածկի։
Գնում է ամպի մոտ։
— Դու ամենաուժեղն ես, ամպ։
— Որ ուժեղ լինեի, անձրևն ինձանից չէր թափվի։
Գնում է անձրևի մոտ։
— Դու ամենաուժեղն ես, անձրև։
— Որ ուժեղ լինեի, ինձանից հետո կանաչը չէր պատի դաշտը։
Գնում է կանաչի մոտ։
— Դու ամենաուժեղն ես, կանաչ։
— Որ ուժեղ լինեի, գառն ինձ չէր արածի։
Գնում է գառան մոտ։
— Դու ամենաուժեղն ես, գառ։
— Որ ուժեղ լինեի, գայլն ինձ չէր ուտի։
Գնում է գայլի մոտ։
— Դու ամենաուժեղն ես, գայլ։



— Որ ուժեղ լինեի, շունն ինձ չէր խեղդի։
Գնում է շան մոտ։
— Դու ամենաուժեղն ես, շուն։
— Որ ուժեղ լինեի, տատիկն ինձ չէր ծեծի։
Գնում է տատիկի մոտ։
— Դու ամենաուժեղն ես, տատիկ։
— Որ ուժեղ լինեի, մուկն իմ ձավարը չէր գողանա։

Գնում է մկան մոտ։
— Դու ամենաուժեղն ես, մուկ։
— Որ ուժեղ լինեի, կատուն ինձ չէր ուտի։
Գնում է կատվի մոտ։
— Դու ամենաուժեղն ես, կատու։
Կատուն հենց նոր էր մի մուկ կուլ տվել ու հանգիստ մռռում էր, երևի ուզում էր ասել.
— Այյո՜... այո՜... այո՜...

## 2

Ահա թե ինչքան ուժով է կատուն։ Ախր մի ժամանակ շատ խոշոր է եղել նա, առյուծից ու փղերից մեծ, համարյա փղի չափ։ Ինքն էլ առյուծի ցեղից։ Դե պարզ է, մարդկանց մոտ էլ չէր ապրում՝, այլ ազատ, ինքնագլուխ, որտեղ ուզենար։ Հապա ինչպե՞ս փոքրացավ, դարձավ կատու, եկավ մարդու մոտ։ Համբերիր չգիտեի այս

մարին։ Դուք էլ երևի չեք լսել։ Ես ձեզ մի երկու խոսքով կպատմեմ, քանի դեռ բուն նյութին չեմ անցել…

Մի օր անտառի մուկը (հա, չմոռանամ ասել, որ այն ժամանակ մկներն էլ մեծ էին, մի-մի ոչխարի չափ ու անտառում էին ապրում) մի օր անտառի մուկը թակարդն է ընկնում։ Այդ կողմից անցնող առյուծ-կատուն հոտն առնում, գալիս հարձակվում է, որ ուտի, վանդակի ճաղերը չեն թողնում։ Ուրախությունից ճանկերը թուլանում են, բերանի ջրերը վազում։ Մուկն էլ երկյուղից համարյա ուշաթափ է լինում։ Եվ դեմ-դեմի նստում են. կատուն՝ դրսում, մուկը՝ ներսում։ Մեկն ուրախությունից է հալումաշ լինում, մյուսը՝ վշտից։ Այսպես մաշվում են, մաշվում,



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

մինչև մութն ընկնում է։ Մուկն այնքան է փոքրանում, բարակում, որ ճաղերի արանքից դուրս է պրծնում։ Կատուն էլ այնքան փոքրացած, ՛հալից ընկած է լինում, որ չի կարողանում հասնել մկանը։ Եվ իրար հետևից սողեսող տալով՝ իրենց գցում են մոտիկ գյուղը, մի տան մեջ պատսպարվում։

Այդ օրվանից ահա կատուն դառնում է կատվի չափ ու մուկը՝ մկան։

3

Համբիկն այս ամենը չի լսել։ Ինչի՞ն է պետք։ Այն էլ բավական է, որ Նազենիի պես խելոք ընկերուհի ունի։ Ցերեկն իրար հետ խաղում են, իսկ երեկոյան փիսիկը նստում է Համբիկի անկողնին, ոտքերի մոտ ու սկսում է մռռալ, մռռալ, մռռալ, ու աղջկա քունն իսկույն տանում է։

Ափսո՜ս, տանը մուկ չկա, որ Համբիկը տեսնի, թե ինչպես է բռնելու։ Իսկ այբբենարանի մուկը իսկի չի գրավում Նազենիին։ Համբիկը գիրքը բաց է անում, գույնզգույն ահագին մուկը դնում փիսիկի առաջ, բայց նա չի էլ նայում, գլուխը մի կողմ է թեքում, երևի ուզում է ասել՝ դեն տար, կարդալու հետ գլուխ չունեմ։

Եթե ՛տանը իսկական մկներ լինեին, նրանց մեջ անպայման կգտնվեր մի սըրտոտր, որ զանգ կախեր կատվի վզից։ Ա՜յ թե հետաքրքիր կլիներ։ Արայիկն ինքն է



մեկ-մեկ կախում, այն էլ ոչ թե զանգ, այլ պապի թազբեհը։ Դա կարգին ձայն չի հանում, որ մկներն զգուշանան ու այնքան էլ ծիծաղելի չի, թեև Արայիկը շատ է ծիծաղում։ Էհ, նրա՞ն ինչ։ Ամբողջ օրը կամ լաց է լինում կամ ծիծաղում է։

Որ իմանաք որքա՜ն մաքրասերն է Նա-

ցենին։ Երբեք հատակին չի նստում, այլ՝ գորգի վրա, սեղանաշարի մի անկյունում կամ բազմոցին, մաքուր, տաքուկ մի տեղ։ Իսկ՝ ուտելուց հետո անպայման պիտի թաթիկով երեսը լվա, կարգի բերի իրեն։ Մի ժամանակ Համիկն սովորում էր, որ ճաշից առաջ էլ լվացվի, ինչպես մանկապարտեզում սովորած ոտանավորն է պահանջում.

Ճաշից առաջ, ճաշից հետո
Միշտ լվացվիր, միշտ լվացվիր։

Բայց չէր լինում, Նապենին ոչ մի կերպ չէր ուզում լսել նրան ու միայն ուտելուց հետո էր լվացվում։ Իսկ գիտե՞ք ինչու։ Համիկը չգիտեր այդ մասին։ Դուք էլ երևի չեք լսել։ Ես ձեզ երկու խոսքով կպատմեմ. քանի դեռ բուն նյութին չեմ անցել։

Գ.

Այս դեպքը պատահել է շատ տարիներ առաջ, Նապենիի տատուպապի հետ։ Մի անգամ առավոտ շուտ այս տատուպապ կատուն ծառի վրա նստած մի աղավնի է բռնում, բերում է ցած, որ նախաճաշ անի։ Աղավնին արթնանալով ու իրեն կատվի ատամների մեջ տեսնելով՝ չի շփոթվում։ «Կեր, անուշ արա, սանամեր,— ասում է.— մի կյանք չէ՞, քեզ մատաղ։ Բայց կարգը պահանջում է, որ ուտելուց առաջ լվացվես։ Այսքան տարի մարդկանց հետ ապրում ես, չե՞ս տեսնում, որ նրանք առանց լվացվելու բան չեն ուտում»։ Կատուն ամաչում է աղավնու խոսքերից, ուզում է մարդավարի նախաճաշ անել։ Թաթիկը առնում է բերանը, թրջում ու սկսում է երեսը լվանալ։ Այդ միջոցին ատամները հեռանում են իրարից, աղավնին հարմար պահ է գտնում ու, պո՜կ, փախչում ազատվում է։ Խեղճ կատուն մնում է շուրթերը լպստելով։ Այդ օրվանից, ահա, կատակ է անում, որ ուտելուց հետո միայն լվացվեն. ոչ թե դատարկ փորով։

Ահա թե-ինչու Նապենին ոչ մի կերպ չի ուզում ենթարկվել մանկապարտեզում Համիկի սովորած ոտանավորին, անլվա է նստում ճաշի։ Արի տես, Արայիկն էլ նրան է հետևում, անլվա, կեղտոտ ձեռքերով հաց է վերցնում սեղանից։ Իսկ երբ մայրիկը քաշ տալով նրան մոտեցնում է ծորակին, նա ճղճղում է ու ասում.

— Բա ինչու՞ փիսիկը չի լվացվում։

Դե, իհարկե, եթե Արայիկն իմանար Նապենիի տատուպապի հետ պատահած դեպքը, այդպես չէր ասի։

Այսպես ուրեմն, այս Նապենիի մասին շատ բան ունեմ պատմելու։

Բայց ուշ է արդեն։ Համիկենք պատրաստվում են ամառանոց գնալ։ Հո չի՞ կարելի մենակ թողնել Համիկին։

## ՀՆԱՐԱՄԻՏ ԴԱՀՈՒԿՈՐԴՆԵՐԸ





Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՐԶԱՅԱՆԻ

# Նվերն ու շնիկը

ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ

Իմ լավ շնիկ,
Իմ քոթոթ,
Ցուրտ է սաստիկ,
Եկ ինձ մոտ:

Վառարանը
Վառել եմ,
Փափուկ գորգն էլ
Փռել եմ...

Քոթոթն ասաց.
— Ա՛յ Նվեր,
Ես, չնայած,
Փոքր եմ դեռ,
Բայց հավատ են
Ընծայել,
Բակն ու դուռ են
Վստահել:
Պիտի դրսում
Միշտ մնամ,
Վազեմ, կոփվեմ,
Ամրանամ:

Պիտի ցրտին
Սովորեմ,
Որ տունը լավ
Պահպանեմ:

Իսկ դու ի՞նչ ես
Տուն մտել,
Վառարանը
Պինդ գրկել:
Արի վազենք
Ու խաղանք,
Ձմռան գրկում
Ամրանանք:

Ասաց շարժեց
Պոչիկը,
Վերև տնկեց
Դնչիկը:
Ու վազ տվեց
Առաջ, ետ,
Նվերիկն էլ՝
Նրա հետ...







ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

# Հիվանդապահը

Արմինեն հիվանդացել էր։ Մայրիկը փոքրիկ Սուսաննային խնդրեց, որպեսզի խնամի հիվանդ քույրիկին, մինչև ինքը վերադառնա շուկայից։

— Կխնամեմ, մայրիկ ջան, դու հանգիստ գնա, վստահեցրեց Սուսաննան։

Երբ մայրիկը վերադարձավ, հարցրեց.

— Հը՞, ինչպե՞ս է հիվանդը, փոքրիկ բժշկուհի։

— Շատ լավ է, մայրիկ ջան, —աշխուժացավ Սուսաննան։ Հենց դու գնացիր, ես մենակ վախենում էի, արթնացրի քույրիկին։ Ես նրան խնձոր առաջարկեցի, չուզեց, ստիպված ես կերա։ Հիմա շատ լավ է զգում իրեն, տես, ինքն էլ է ծիծաղում։



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

## ԽԱՆԳԱՐՈՒՄ Է ՄԵԾ ՄԱՏՍ

Մայրիկը Արմինեի համար նոր կոշիկներ էր բերել։ Արմինեն ուրախացած հանեց հները և սկսեց փորձել նորը։

— Ինչպե՞ս են, լա՞վ են ոտքիդ, — հարցրեց մայրիկը։

— Լավ են, մայրիկ ջան, միայն թե մեծ մատս, որ քիչ կարճ լիներ, չէր ցավեցնի, կոշիկիս խանգարում է։







ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԱՐԴԱՐԱՑԻ ՊԱՏՃԱՌ

Մայրը թերթում էր Վարսիկի օրագիրը:

— Վա՜յ,— հանկարծ վարմացավ նա,— այս ինչպե՞ս է, որ դպրոցում աշխատանքից «5» ես ստանում, տանը մատը-մատից չես խփում:

— Դպրոցում օրագրիս մեջ միշտ գնահատական են նշանակում, իսկ դու նշանակո՞ւմ ես,—ասաց Վարսիկը:

## Ես հայերեն եմ երգում

Մենք Մոսկվայից հյուրեր ունեինք: Ցերեկը քաղաքի տեսարժան վայրերը դիտելուց հետո, նրանք հոգնած տուն եկան ու պառկեցին հանգստանալու: Վարսիկը սուսուփուս նկար էր անում: Մեկ էլ նա տեղից վեր թռավ և սկսեց երգել մանկապարտեզում սովորած նոր երգը: Երգում էր, հետո էլ ծափ տալիս ու թռվռում:

— Վարսի՛կ, ախր քնած են, խանգարում ես,—շշուկով վգուշացրեց մայրը:

— Ի՜...ի՜... չե՞ս լսում, ես հայերեն եմ երգում, նրանք հո չե՞ն հասկանա...

## ԶԲՈՍԱՆՔ

Վարսիկը մի փոքրիկ քույր ուներ: Հենց որ պապը աշխատանքից տուն էր դառնում, նա տիկնոցը դնում էր: Պապն էլ իսկույն բռնում էր նրա ձեռքից ու տանում զբոսանքի:

— Ինչո՞ւ ինձ էլ չես տանում,— մի օր բողոքեց Վարսիկը,— միշտ նրան, միշտ նրան:

— Դե, նա լալկան է, աղջիկս, — արդարացավ պապը,— տանում եմ, որ ձայնը կտրի:

— Որ այդպես է, ես էլ լաց կլինեմ, դե ինձ էլ տար, ասաց Վարսիկը և սկսեց՝ ու՜.., ու՜... ու՜...









# ԼԱՎ Է, ՈՐ ՆՎԵՐ ՉԷՐ

ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Էմման ամեն օր տիկնիկներ էր նվեր ստանում։ Նա ինքն էլ այնքան տիկնիկներ ունե՞ր։ Բայց էլի ստանում էր։ Նա մեր տանտիրոջ աղջիկն էր։ Իհարկե, այդ նվեր-տիկնիկները Էմմային չէին բերում։ Նոր տարի հո չէ՞ր, ա՛յ եթե Նոր տարի լիներ, Էմմայի համար էլ կբերեին, և ոչ միայն տիկնիկներ, այլև ուրիշ շատ ավելի մեծ նվերներ։ Դա հենց ինքը՝ Էմման էր ասում։ Իսկ այս նվերները բերում էին Էմմայի փոքրիկ-փոքրիկ քույրիկի համար։ Բայց Էմմայի փոքրիկ քույրիկը հենց ինքն էլ մի տիկնիկի չափ էր ու տիկնիկից էլ ոչինչ չէր հասկանում, դրա համար էլ այդ նվերները մնում էին Էմմային։ Իսկ ես և իմ փոքրիկ քույրիկը, որի անունը Անահիտ էր, ոչ մի տիկնիկ չունեինք և ինչքան էլ խնդրում էինք Էմմային, որ իր տիկնիկներից մեկն ու մեկը տար գոնե մեկ անգամ մեր ձեռքով բռնեինք, չէր տալիս։

— Ի՞նչ է, հո ձեզ համար չե՞ն բերել, համ էլ, որ տամ՝ շորերը կկեղտոտեք, — ասում էր նա։

Էմմայի մազերին մի մեծ, շատ մեծ վարդի նման, այո, վարդի նման սպիտակ ժապավեն կար, իսկ շորերն էլ ճիշտ այդ տիկնիկների շորերի նման էին և դեռ ավելի շքեղ։ Ես աչքս գցում էի մեր շորերին և շատ կամաց, որ հանկարծ լաց չլինեմ, ասում էի քույրիկիս.

— Անահիտ ջան, գնանք տուն, լա՞վ։

— Մայրիկ, Էմման փիսն է, — մի անգամ տուն մտնելուն պես ասաց Անահիտը։

— Չէ, բալիկ ջան, նա վատ աղջիկ չէ, տես, մեր հայրիկին իրենք են աշխատանք տվել, և հետո՝ սա էլ իրենց սենյակն է, ուր ապրում ենք, — հանգստացնում էր մայրիկը։

— Սա ի՞նչ սենյակ է որ, նկուղ է, — շըր-

թունքները ուռեցնելով՝ ասաց Անահիտը։

— Իսկական նկուղ է, իսկ իրենց սենյակները ինչ սիրուն են, չէ՞, մայրիկ։

— Ոչինչ, բալիկ ջան այ, եթե գնանք հայրենիք, մենք էլ այդպիսի սենյակներ կունենանք, — հառաչեց մայրիկը։

— Իսկ ինչո՞ւ Էմման տիկնիկը չի տալիս խաղանք, — լացակումած ասաց Անահիտը։

— Ոչինչ, չի տալիս, պետք չէ, հայրենիքում և լավ տուն կունենանք, և շատ տիկնիկներ, — Անահիտին շոյելով ու համբուրելով՝ ասաց մայրիկը։

Օրերն անցնում էին իրար հետևից։ Բայց մեր հայրենիքը դեռ շատ էր հեռու։

Եվ ահա դեկտեմբերի վերջին օրերն էին, Նոր տարվա նախօրյակ... Մենք էլ մի փոքրիկ, շատ փոքրիկ եղբայր ունեցանք։ Բոլորից շատ ուրախացել էր Անահիտը, նա հաճախ էր դիմում ինձ, ասելով.

— Հիմա մենք Էմմային ցույց կտանք, չէ՞, մեզ էլ շատ տիկնիկներ ու նվերներ կբերեն, մենք էլ իրեն չենք տա։ Եվ դեռ մենք ավելի շատ նվերներ պիտի ստանանք, քանի որ և Նոր տարի է, և փոքրիկ եղբայր ունենք, ճիշտ չե՞մ ասում, Հասո ջան, ասա, դե ասա, է՛, — շարունակ պնդում էր նա։

Իսկ ես նվերի մասին բոլորովին էլ չէի մտածում, ես այնպե՛ս էի ուզում, որ իմ հայրիկը ուրիշների նման նոր հագուստ ունենար...

Անցավ երկու-երեք օր, բայց մեր տունը ոչ ոք չէր գալիս, իսկ Անահիտը շարունակ հարցնում էր.

— Մայրի՛կ, բա ինչո՞ւ մեր տունն էլ մարդիկ չեն գալիս։

— Հյուրերին հյուրասիրել է պետք, իսկ







մենք ոչինչ չունենք, ավելի լավ է, որ չգան,— մի քիչ սրտնեղած պատասխանում էր մայրիկը։

— Ջե՜, թող գա՛ն, էլի՜։

Եվ հենց այդ օրը հայրիկը աշխատանքից տուն եկավ իր մի ընկերոջ հետ։ Մայրիկս շատ իրար անցավ, պահած տեղից ինչ-որ բաներ հանեց և հյուրասիրեց։ Հայրիկս ու իր ընկերը երկար նստեցին։



Անահիտը մի կողմ կանչեց ինձ և ականջիս փսփսաց.

— Տե՛ս, սեղանին դրված փաթեթը երևի տիկնիկ է. ես այնպես եմ ուզում մի լավ տիկնի՜կ. իսկ դու ի՞նչ ես ուզում։

— Անո ջան, սըսսս. ամոթ է, հանկարծ կլսի,— ես նույնպես փսփսացի նրա ականջին։

Վերջապես այդ մարդը գնաց, իսկ փաթեթը մնաց սեղանին։ Մայրիկը վերցրեց այն, առանց շտապելու բաց արեց, և ինչ... տնկնիկ չէր, այլ մի լավ սփռոց։ Անահիտը շատ տխրեց, քիչ մնաց լաց լիներ, բայց մայրիկի ուրախությունը տեսնելով՝ ինքն էլ կարծես ուրախացավ։

— Ինչ լա՜վ է, ոչ մի հատ սփռոց չունեինք, ինչպես էլ հասկացել է,— շարունակ կրկնում էր մայրիկը։

Երկու օրից հետո հունվարի մեկն էր, և մայրիկը այդ սփռոցը փռեց ու մի քանի լավ բաներ էլ դրեց սեղանին։ Հենց այդ սփռոցից միայն սենյակն արդեն տոնական տեսք էր ստացել։ Հա, մոռացա ասել, որ մենք, ճիշտ է, փոքրիկ, բայց շատ սիրունիկ տիկնիկ էլ ունեինք արդեն։ Եվ, իհարկե, չկարծեք, թե դա էլ մեր տուն եկած մեկ ուրիշ հյուր էր մեզ նվեր բերել։ Ոչ, դա մեր հայրիկն էր մի լրացուցիչ աշխատանք կատարելով գնել։ Եվ հենց Նոր տարվա առավոտյան նա համբուրեց մեզ և տվեց տիկնիկը։

Այդ օրը ուրախ էինք բոլորս։ Ես ու Անահիտը տիկնիկի վրա էինք ուրախացել, իսկ հայրիկն ու մայրիկը՝ մեր ուրախության վրա։

Անցել էր արդեն մի քանի օր, երբ հայրիկը տուն եկավ շատ մտահոգ ու տխուր։ Ես երբեք նրան այդպես չէի տեսել։ Մայրիկը անհանգըստացած հարցրեց.

— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ ես այդպես տըխուր։

— Է՜հ, ի՞նչ պիտի լինի, խայտառակվեցինք մնացինք. այսօր հանդիպեցի Արային, ասաց, որ փաթեթը մոռացել է մեր տանը և խնդրեց, որ տանեմ։

Մայրիկս համարյա գունատվեց...

— Իսկ մենք էլ կարծել ենք, թե նվեր է, և արդեն օգտագործել ենք, ինչ խայտառակությո՜ւն...

Ես էլ տխրեցի, իսկ Անահիտը մոտեցավ ինձ և ականջիս փսփսաց.

— Հասո ջան, ինչ լավ է, որ իմ տիկնիկն էլ այդ փաթեթի մեջ չէր, չէ՞։









# Առաջին հատիկը։

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

— Ծի՜վ, ծի՜վ, սոված եմ սաստիկ,
Ծվծվում էր մի ծիտիկ։
— Մի՛ ծվծվա, իմ անգին,—
Ասաց մայրը ծիտիկին։—
Թե պգում ես սոված ես,
Գնա ու կուտ ճարիր քեզ։
— Մայրի՛կ, ինչպե՞ս կուտ ճարեմ,
Չէ՞ որ ես դեռ փոքրիկ եմ։
— Չէ, բալիկ ջան, փոքրիկ չես,
Էլ ծիտիկ չես, դու ծիտ ես։—
Սիրտ արեց ծիտն ու հանկարծ
Ծառից թռավ իջավ ցած,
Գտավ մի մեծ գարու հատ,
Կերավ ուրախ ու զվարթ։
— Ի՞նչ համով էր, մայրիկ ջան,—
Դարձավ ասաց նա մորը,—
Թույլ տուր թռչեմ՝ մեզ համար
Հատիկ բերեմ ողջ օրը։

Նկ.՝ ԿԱՐԵՆ ՄԻՐԱՍՅԱՆԻ





# ԻՄ ՀԵԾԱՆԻՎԸ

ԱՐՄԵՆ ԽՈՍՏԻԿՅԱՆ

Ինձ համար եռանիվ հեծանիվ գնեցին։ Մե՜ծ, մե՜ծ հեծանիվ, կարմիր, կարմիր։ Այդպիսին ոչ ոք չունի։ Գագիկն ու Հրայրն էլ չունեն։ Ճիշտ է, Վահիկը հեծանիվ ունի, բայց... երկանիվ է, իսկ իմը՝ եռանիվ։ Վահիկն արդեն քշում է իր հեծանիվը, իսկ ես դեռ չեմ քշում։ Չկարծեք, թե չեմ կարողանում։ Չէ՜, պարզապես ոտքերս ոտնակներին չեն հասնում։ Սպասում եմ, սպասում, բայց չեն հասնում։ Օրը մի քանի անգամ բարձրանում եմ թամբին, իջնում, նայում եմ՝ բոլոր կողմերից՝ վերևից, կողքից։ Լավն է։ Այսպիսի հեծանիվ քիչ կա։ Ընդամենը՝ երկու-երեք հատ։ Մեկը իմն է, մյուսը՝ Գագարինի տղայինը, երրորդը՝ ցուցահանդեսում։ Հապա զանգը՝ զը՜նգ, զը՜նգ։ Սիրում եմ զանգել, որովհետև Մարո մորաքույրը ջղայնանում է։ Չեմ սիրում մեր այդ հարևանուհուն։

— Զանգի հետ խաղալ չի կարելի, — ասում է նա, իսկ ինքը գազօջախից չի հեռանում. կարծես գազի և լուցկու հետ խաղալ կարելի է։

Ես էլ, դիտմամբ, զանգում եմ երկա՜ր, երկա՜ր, ու նրան թվում է, որ հեռախոսն է։ Հի՛, հի՛։ Նա իրեն միջանցք է գցում, վերցնում է հեռախոսափողը և... ոչ մի պատասխան։ Ճիշտ է, դրա համար մայրիկս ինձ նախատում է, բայց ոչինչ, ես գիտեմ, որ նա էլ չի սիրում այդ Մարոյին։ Բա արժե՞ սիրել մի կնոջ, որի տղան ամեն օր, առանց կարմրելու ասում է.

— Հեծանիվդ տուր՝ քշեմ։

— Չէ՛, իմն է, — ասում եմ։

— Մինչև մեծանաս, ես ամբողջ մեր քաղաքը կշրջեմ... հետո՝ կտամ։ Ազնիվ խոսք։

— Չէ՛։ Հեծանիվն իմն է, — ասում եմ ես։

— Գոնե տուր նստեմ։

— Չի կարելի։ Կփչանա։

— Չէ, մի չէ, մեծ բան է։ Վահիկից կուզեմ՝ կտա։

— Ուզում ես՝ ուզի։

— Նրա հեծանիվը քոնից լավն է,— Վաչոն նախանձից է այդպես ասում, ինքն էլ լավ գիտե, որ իմը եռանիվ է։

Գիշերները երազում տեսնում եմ, որ մեծացել եմ, հեծանիվս քշում եմ բակում, ու իմ հետևից վազում են մեր շենքի բոլոր, բոլոր երեխաները։ Ես ավելի արագ եմ քշում, թափով պտտելով ոտնակները... Երբ զարթնում եմ՝ վերմակս հատակին է, ես՝ ցանցի վրա, ներքնակը՝ ինձ վրա, իսկ բարձը՝ ոտքերիս մոտ։

— Ինչու՞ եմ այսպես դանդաղ մեծանում։

Իմ այս հարցից մայրս ժպտում է, հայրս շոյում է գլուխս, իսկ տատիկս ասում է, որ ես քիչ եմ ուտում, դրանից էլ չեմ մեծանում։

— Ա՜խ, ինչպե՜ս եմ ուզում շուտ մեծանալ,— ասացի Վաչիկին մի անգամ։

Երեխաները էլի են ծիծաղում։ Բայց չէ՞ որ նա ինձ անվանեց և՛ «ագահ», և՛ «խոզուկ»։ Ու րեմն պետք է «խոզանակի պոչին» մի բան էլ ավելացնել։ Բայց ի՞նչ։

— Ո՞վ է խոզանակի պոչը,— գոռում է Վաչոն։

— Դու ես խոզանակի պոչը, այն էլ՝ «ճըռճըլուտ»։

— Ի՞նչ։

Վաչոն դեղնում է։ Հիմարը չի հասկանում, թե ինչ է «ճռճլուտ»-ը, ճիշտն ասած՝ ես էլ չըգիտեմ։ Հի՛, հի՛, հի՛։ Այդ բառը ես հնարեցի։ Դա կատաղեցնում է Վաչոյին, տեղն է։ Բոլոր երեխաները շշմել են, ուզում են իմանալ, թե ինչ է նշանակում «ճռճլուտ»-ը։ Ես իջնում եմ հեծանիվից և այն տուն տանում։ Ինչքա՜ն գոհ եմ, որ զայրացրի այդ լողլողին։ Բայց Վաչոն



— Ագահները չեն մեծանում։

— Իսկ դու՞...

— Ո՞վ։

— Դու...— Վաչոն չի թողնում, որ ես էլ իրեն անուն կպցնեմ։

— Դու ագահ խոզուկ ես,— ծիծաղելով, ինձ ջղայնացնելու համար ասում է Վաչոն։

Բոլոր երեխաները ծիծաղում են։ Նայում եմ, նայում ու չգիտեմ ինչ անուն կպցնեմ նրան։

— Իսկ դու խոզանակի պոչ ես,— վերջապես ասում եմ ես։

հասնում է հետևիցս և, ոտը եռ տանելով, ուզում է խփել ինձ։ Վախից ես մի կողմ եմ թըռչում՝ ու ճչում՝ է՜յ... Նա ամբողջ ուժով հարվածում է հեծանիվին։ Հի՛, հի՛, Վաչոն բռնում է ոտքը և նույնպես ճչում։ Ինչ է, չգիտե՞ր, որ իմ հեծանիվը երկաթից է ու եռանիվ։ Այդպիսի հեծանիվ երեք-չորս հատ կա, մեկը իմն է, մըյուսը... Բայց... Վաչիկի ոտքից արյու՞ն է գալիս։ Ես տուն եմ ծլկում։

— Ինչու՞ հեծանիվը չես տալիս, որ Վաչիկը քշի,— բարկանում է հայրս։

— Հեծանիվն իմն է, նրանը չէ։

— Տեսնու՞մ ես, Վահիկն ինչ բարի է,— ասում է մայրիկս,— նրա հեծանիվը բոլոր երեխաներն են քշում։

— Վահիկինը երկանիվ է, իսկ իմը՝ եռանիվ։

Այստեղ ի՞նչ գործ ունի անիվների քանակը։

— Ունի... Մայրիկին դու միշտ ասում ես՝ «Ինչքան շատ՝ այնքան լավ։ Լավ է, երբ ամեն ինչ շատ է լինում, և վատ է, երբ դժվար է ճարվում կամ բոլորովին չկա»։

— Այդ ու՞մ ես գցել այդպես... ագա՛հ, չա՛ր։ Չէ՞ որ Վաչիկը հայր չունի։

Վիրավորական է, որ իմ հայրիկն անընդհատ լողլողին, այդ «խոզանակի պոչին» է պաշտպանում։

— Իսկ ինչու՞ է նա ինձ «ագահ խոզուկ» ասում։

Ես հազիվ եմ զսպում լացս։

Մայրիկս խղճում է ինձ, գրկում։

— Ոչինչ, տղաս, դու դեռ ցույց կտաս, որ բարի... խոզուկ ես,— ժպտալով ավելացնում է հայրս։

Հետևյալ օրը մայրս ինձ հագցնում է իմ ամենալավ զգեստը՝ նավաստու հագուստը, և նոր կարմիր կոշիկներս։ Այդպիսի կոշիկներ ոչ ոք չունի. մորաքույրս է ճարել կենտրոնական խանութից։

Բակում հավաքված երեխաներին մի կողմ հրելով՝ ես բարձրանում և նստում եմ իմ եռանիվ հեծանիվը։ Հետևից հրելով՝ հայրս ինձ հասցնում է պոլիտեխնիկական ինստիտուտ։ Նա այնտեղ է աշխատում։ Հայրս ինձ նստեցնում է նստարանին, հեծանիվս մի կողմ քաշում և պատվիրում չշարժվել։ Հենց իմ մոտից սկսվում է փողոցի զառիվայրը. ա՛յ թե կարելի է քշել։

Անցորդները իմ հեծանիվին են նայում։ Դե, իհարկե, այսպիսի...

— Է՛յ, է՛յ, թո՛ղ իմ հեծանիվը։ Ես վազում եմ դեպի անծանոթ տղան, որ իմ հեծանիվն է նստել։

Իջի՛ր։

Ինչո՞ւ։

Որովհետև իմն է։ Այսպիսի հեծանիվ մեր քաղաքում չկա։ Միայն ես ունեմ։ Երկրորդը Մոսկվայում է՝ տիեզերագնացի տղայինը...

Ո՞վ ասաց։ Ա՛յ, մեկն էլ,— մատով ցույց է տալիս տղան։

Ճիշտ որ, նստարանի մոտ կանգնած է իմ հեծանիվը։

Իսկ սա ո՞ւմն է։

Վիտյայինը։

— Ուրեմն քոնը չէ՞։

— Չէ, մեր հարևանինն է... Նրանք Մոսկվայից են եկել։

— Քեռի Յուրա՞ն էլ է եկել։

— Ի՞նչ քեռի Յուրա։

— Դե Վիտյայի հայրը, էլի։

— Նրանք բոլորն էլ փոխադրվել են՝ մայրն էլ, հայրն էլ։ Միայն՝ հոր անունը ոչ թե Յուրա է, այլ՝ Վազգեն։



Հասկացա։ Ուրեմն շուտով Երևանից Լուսին են թռչելու։

Ո՞վ. երեխանե՞րը,— հարցրեց տղան։

— Չէ։ Դեռևս մանկական տիեզերանավեր չկան։ Հիմա միայն այսպիսի հեծանիվներ կան, այն էլ՝ շատ քիչ, ընդամենը՝ երեք-չորս հատ. մեկը իմն է, մյուսը՝ Վիտյայինը, երրորդը ցուցահանդեսում... Բայց, տե՛ս հա, չփչացնես հեծանիվը, հենց հիմա գնա ու Վիտյայի՛ն վերադարձրու։

— Ինչու՞։ Նա բարի է, օրերով այս հեծանիվը բակում է թողնում, ու բոլոր երեխաները քշում են։

Բոլոր երեխաները քշու՞մ են... Դրա համա՞ր է ճռռում...

Ոչինչ։ Յուղ կքսենք և չի ճռռա։ Տղան թափ առավ ու քշեց հեծանիվը։

...Նա բարի է... Բոլոր երեխաները քշում են նրա հեծանիվը։ Ուրեմն Գագարինի տղան՝ Վիտյան, բարի է, իսկ ե՞ս... Ես էլ եմ բարի։ Հենց որ Վաչիկին տեսնեմ՝ իմ եռանիվը կտամ, ինչքան ուզում է՝ թող քշի։

Ինստիտուտի պատուհաններից ինձ էին նայում հայրիկի ուսանողները։

— Իսկ դու քշել գիտե՞ս,— հարցրեց նրանցից մեկը։

Ես չպատասխանեցի. բարձրացա և նստեցի հեծանիվս։ Առաջ նայեցի ու հանկարծ տեսա «խոզանակի պոչին»։ Նա գալիս էր իր մեծ քրոջ հետ։

— Է՜յ, փոքրի՛կ, դու քշել գիտե՞ս, նորից հարցրին ինձ։

Ես հաստատ գլխով արի և ոտքս սեղմեցի նստարանին։ Դրանից անիվները գլորվեցին, և հեծանիվն առաջ գնաց։

— Կանգնի՛ր,— լսեցի հորս ձայնը։— Կանգնեցրու՛, լսու՞մ ես։

Հեծանիվը ավելի ու ավելի արագ էր թռչում։ Ինչու՞ հայրիկը չի հասկանում, որ ոտքերս ոտնակներին չեն հասնում։

Վաչիկը հիմա տրաքվում է նախանձից... Հետաքրքիր է՝ նա տեսնու՞մ է, որ ես առանց օգնության եմ գնում։ Ես նայեցի. «խոզանակի պոչը» քայլում էր անտարբեր։ Քամին սուլում է ականջներիս մեջ։

«Ուռա՜»։ Ես անցա բեռնատարից... Գուցե նա կանգնա՞ծ է... Ու՜խ, լավ է հեծանիվով սուրալը։ Քիչ է մնում դիպչեմ անցորդներին։

— Է՜յ,— գոռում եմ ես։

— Կանգնեցրե՛ք երեխային,— ճչում է մի գեր մորաքույր։

«Բա չէ՜, կկանգնեցնես»,— մտածում եմ, և հետևից մի տարօրինակ ազդանշան ասում է՝ «հա՛ֆ, հա՛ֆ»։ Ինչքան գիտեմ «Վոլգայի» ազդանշանը «պի-բիբ» է, «Մոսկվիչինը»՝ «տի-տիտ»... Հա, ինձանից ճանապարհ է խնդրում «Զապորոժեցը»։ Ես ետ եմ նայում և ճչում... իմ հետևից մի ահագին շուն է վազում։ Ինչու՞ Վաչիկին չտվեցի քշելու... «Մայրի՜կ»... Շունը արդեն հասնում է։ Սարսափից աչքերիս առաջ մթնում է.

— Մայրի՜կ, մայրի՜կ...

Իսկ հետո՞։ Հետո՝ վիրակապերի մեջ կորած, ես զարթնեցի հիվանդանոցում։ Գլխավերևումս սպիտակ խալաթ հագած մի քեռի էր կանգնած. Չգիտես ինչու, հայրիկս էլ սպիտակ խալաթ էր հագել։ Փակում ու նորից բացում եմ աչքերս և հանկարծ տեսնում Վաչիկին։

— Վերցրո՛ւ իմ հեծանիվը. Վաչո ջան։ Իմը եռանիվ է, ավտոմեքենայից արագ է գնում...

Տրվում է անվճար՝ «Պիոների» 1966 թ.
առաջին համարի հետ

# ՈՒՐԱԽ ՆԿԱՐՆԵՐ























# Երգող ծիտիկ

— Ծիվ-ծի՛վ, ծիվ-ծի՛վ,—
Կանչում էին իրար ծեռաց,
Մեկտեղ ուտում:
Իսկ երբ դեմի պատշգամբում
Ծիտիկների ծանոթ տղան
Բաց էր անում փոքրիկ սեղան՝
Վրան մի քիչ հացի փշուր,
Մի բուռ հատիկ,—
Խնդությունն էր նրանց դառնում
Տասնապատիկ.
Առավոտ վաղ,
Մաքուր օդում
Քեֆի էին նրանք նստում,
Ապա ելնում ու ոստոստում:



Մեկ ծտապար էին պարում,
Մեկ ծտերեն երգեր ասում:
Փոքրիկ տղան ասես քիչ-քիչ
Հասկանում էր նրանց լեզուն:
Գիտեր, որ այդ երգով թռվիչ
Ծիտիկները գարնան արև,
Կանաչ տերև են երազում
Եվ երազով, երգով, պարով
Տաքանում են, էլ չեն մրսում:

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

---

ինձ պետք է հագնել. Շամրիկը չվարել է: Ախր ես այնքան կապույտ եմ, որ Շամրիկը վախենում է ինձ կեղտոտելուց... ճիշտն ասած, ես այնպես եմ սարսափում... կեղտոտվելուց, որ եթե Շամրիկն իմանա, երբեք չի հագնի:

Բայց պահարանում շարունակ կախված մնալն ավելի սարսափելի է... Ու հիմա Շամրիկը մտքում միլիոն անգամ ինքն իրեն խոսք է տալիս ինձ երբեք չկեղտոտել ու շատ չմաշել: Երդվում



է ու չգիտե, որ հենց այս առավոտյան, երբ ինձ ստիպում էր տաք արդուկով ուղիղ ծալքեր ստանալ, այրեց իմ կապույտ փեշը: Շամրիկը չգիտե այդ մասին, ու ես բերանս ամուր սեղմել եմ, որ ցավից չճչամ... Ես բերանս ամուր սեղմել ու նայում եմ Շամրիկին: Նա և՛ ուրախ է, և՛ տխուր: Ուրախ է, որ կապույտ շրջազգեստ ունի, տխուր է, որ այն, միևնույն է, կեղտոտվելու է: Իսկ ես սպասումից դողում եմ ու մտածում աշխարհի Շամրիկների մասին, որոնք կապույտ շրջազգեստներ են սիրում և հագնելուց առաջ միլիոն անգամ երդվում են չկեղտոտել: Մտածում եմ նաև մղկտացնող այն օճառափրփուրների մասին, որոնք պետք է երբեմն-երբեմն մաքրեն կեղտերս, խամրեցնեն իմ կապույտ գույնն ու ոսկեգույն արևիկներս...

Իսկ ես հիմա, թեև այրված փեշով, բայց այնպե՜ս կապույտ եմ...

Միայն թե ու՜շ կեղտոտվեի:

Միայն թե ու՜շ մաշվեի:

Ա՜յ թե ինչի մասին է հիմա մտածում Շամրիկը, և գիտեմ, որ այդպես էլ կանի...

ԽԱՉԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ



ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

## ՁՎԵՐԸ ԵՎ ՆՄԱՆ ԲԱՆԵՐ

Հիմա, ինչ ուզում է լինեք, պետք էր գտնել էշերի կոշկակարին: Միայն նա գիտեր Վարդուշի իսկական անունը և կյանքի պատմությունը:

Բաջ բազուկը որոշեց, որ հարկավոր է հետախուզել ձորն ու Դարմայի այգիները: Որոշելը հեշտ է: Ես չէի ուզում խմբում ամենավախկոտը երևալ, դրա համար էլ ձայն չհանեցի: Ամենասարսափելին այն էր, որ պետք էր գնալ երեկոյան, քանի որ գնչուները ցերեկով տեղում չեն նստում: Առայժմ մենք չգիտեինք, թե ինչ ենք անելու էշերի կոշկակարին գտնելուց հետո: Մեզնից ոչ մեկը դրա մասին չէր մտածում: Միայն կախարդվածի նման ուզում էինք մի անգամ էլ տեսնել այդ խորհրդավոր մարդուն: Ես «մարտական» հանձնարարություն ստացա: Բանն այն էր, որ որբևայրի Փառանձեմի տանը ձու չկար, Իմ դալուկ բարեկամը տանից ոչինչ չէր կարող թռցնել, մնում էի ես, և աղբյուրի ծառուղիում Բաջ բազուկը տաք-տաք համոզում էր ինձ.

— Մարդիկ հեղափոխության համար կյանք էլ չեն խնայել:

— Հեղափոխությունն ի՞նչ գործ ունի այստեղ:

— Դե, դրա նման մի բան է,— գլուխն ազատեց Բաջ բազուկը,— գործի համար հարկավոր է, որ դու տանից երկու ձու թռցնես:

— Այսինքն՝ գողանամ, էլի:

— Դե, դա ի՞նչ գողություն է: Այ, օրինակ, հենց իմանար հում-հում խմել ես, Վարդուշ քույրիկը հենց ամեն օր խնդրում էր:

Ինչ արած, ես թռցրի այդ չարաբաստիկ երկու ձուն: Մի մեծ սանր գնչուները ծախում էին երկու ձվով:

— Եթե պետք չգա, էլի տեղը կդնենք,— հուսադրում էր Բաջ բազուկը,— մենք ձվերը վերցնում ենք նրա համար, որ եթե նկատեն, ասենք, որ մայրիկն է ուղարկել սանր գնելու:

...Այդ կածանը գիրթ իջնում էր մինչև գետը: Ամռան օրերին մենք դրանով գնում էինք լողանալու: Երեքս էլ գիտեինք դրա ոլորանները: Դրա կողքին մի հսկայական ժայռ կար, որին բոլորս էլ Ծակ քար էինք ասում: Ժայռը խոռոչ ուներ: Բաջ բազուկը պնդում էր, որ էշերի կոշկակարն ու մյուս գնչուները հավանաբար հենց այդ անձավում են ապրում:

Արևն արդեն մայր էր մտել, խավարը թանձրանում էր, մենք կածանով իջնում էինք զգույշ: Առջևից գնում էր Բաջ բազուկը, հետո Իմ դալուկ բարեկամը, հետո ես էի քարշ գալիս՝ վերարկուիս գրպանում պահելով ձվերը, որ իրար չկպչեն: Ամեն քայլից հետո Բաջ բազուկը կանգնում էր ու ականջ դնում: Իմ սիրտը դողում էր: Ես գիտեի, որ այդ մարդը տասնհինգ տարի առաջ սպանել է իր սեփական կնոջը և նրա համար մի մեծ բան չի մութ ու ամայի ձորում երեք երեխա սպանելը:

— Ետ գնանք,— շշնջացի:

Երևում է, Իմ դալուկ բարեկամը համաձայն էր, բայց Բաջ բազուկը, խռպոտ շշուկով, ամոթանք տվեց.

— Աղջիկ ճարե՞ց, դեռ ուզում ես պատկոմ գրվել:

Պատկոմ գրվելը բոլորիս երազանքն էր, բայց, ինչ արած, մեզ չէին ընդունում, դրա համար մենք դեռևս փոքր էինք:

— Դե լավ, գնանք,— համաձայնեցի ես:

Մեր ոտքերի տակից փոքր քարեր էին պոկվում, ու ինձ թվում էր, թե ահռելի աղմուկ էին բարձրացնում գլորվելիս: Քանի իջնում էինք, խավարն այնքան թանձրանում էր, թանձրանում էր նաև գարշելի մարդասպանին տեսնելու սարսափը: Այդ ժամանակ էր, որ ես հանկարծ մտածեցի, թե նրան գտնելուց հետո ինչ ենք անելու...

Մոտենում էինք Ծակ քարին, մեզանից ամենասրտոտը՝ Բաջ բազուկն անգամ հիմա հազիվ-հազ էր սողում առաջ... Մի սխալ քայլ, մի սայթաքում, և կգահավիժեինք անդունդը, փշուր-փշուր կլինեինք: Իսկ ի՞նչ կար առջևում. հանդիպում մարդասպանի հետ, հանդիպում, հետո ի՞նչ...

Ես Իմ դալուկ բարեկամից առաջ անցա, շառ-

---

Սկիզբը՝ 1965 թ. №№ 8—12:

պում էր, հասնել Բաջ բազուկին, ասել, որ հիմարությու՛ն ենք անում, որ էշերի կոշկակարին տեսնելուց հետո էլ մեզ համար ոչ մի բան չի պարզվի: Բայց այդ ժամանակ ներքևից երեխայի ձայն լսվեց և էշերի կոշկակարը շատ մոտիկից ասաց.

— Դրա ձենը կտրի, ես հիմա կվերադառնամ:

Մեքենայորեն ձեռքեցինք մայթին: Նա գրեթե մեզ քամելով անցավ: Ես շունչս պահեցի, վախից փակեցի աչքերս: Բայց, րոպե երկու չէին, նա տարված էր սեփական մտքերով, ոչ մեկիս չնկատեց: Արդեն ձորի պռունկին էր հասնում, երբ մենք շունչներս ետ բերինք: Իմ զգացում ինչ-որ լքծուն բան կար: Հետո պարզվեց, որ ես վախից ոչ միայն աչքերս էի փակել, այլև ձեռքերս. ձվերը ճմլվել էին...



Չարում մեզ համար հետաքրքիր էլ ոչինչ չկար: Մենք դանդաղ վերադարձանք եկած ճանապարհով: Էշերի կոշկակարը կորել էր ձորափի նեղ ու մութ փողոցներում: Ընկերներս լավ էին, իսկ իմ հոգսը միայն կեղտոտված գրպաններս չէին, որից ես հանել, թափել էի չարաբաստիկ ձվերի մնացորդը:

— Նա, երևի, գինետո՛ւն գնաց,— հանկարծ ասաց Բաջ բազուկը:

Ես չպատասխանեցի. ինձ արդեն կշտացրել էր այդ պատմությունը:

— Այստեղ մոտիկ գինետուն կա, գնանք:

— Ձեռ քաշի,— բարկացա ես,— ես տուն եմ գնում:

— Օգնող ձեռք,— ասաց Բաջ բազուկը,— ես քեզ մեղադրում եմ վախկոտության համար:

— Կարո...

— Օգնող ձեռք, այստեղ Կարո չկա, քո առաջ կանգնած են երկու ազնիվ մրիմաստ՝ Իմ գայլուկ բարեկամը և Բաջ բազուկը՝ «Անտեսանելի ավերների» խմբից: Նրանք արյունով են երդվել և վախկոտների հետ գործ չունեն:

— Կարո...

— Հեռացի՛ր,— փչչաց Կարոն ու Թուքոյին դառնալով՝ ասաց.— Գնանք, Իմ գայլուկ բարեկամ:

Նրանք լոր-լոր անելով հեռացան, ու ես հանկարծ մենակ մնացի մութ, նեղլիկ փողոցում: Ականջիս հնչում էր հեռացող ընկերներիս խուլ ոտնաձայնը, լացս գալիս էր, ձեռքիս մատները կպչում էին իրար՝ ձվի զզվելի շիլայից:

— Կանգնեցե՛ք,— գոռացի,— կանգնեցե՛ք:

Ես վազեցի, հասա նրանց ու հետևից բռնեցի Կարոյի ուսը: Նա շուռ եկավ ու անծանոթի նման ասաց.

— Ի՞նչ ես ուզում, բարեկամ:

— Ինձ՛ վերցրե՛ք ձեր խմբից, ես ինքս էլ վախկոտ չեմ, բա որ վախկոտ եմ, ո՞նց ձվերը թողցի, հը՞:

— Ես քեզ չեմ ճանաչում:

— Թուքո ջան, գե մի բան ասա, էլի,— դիմեցի ես Թուքոյին:

— Բաջ բազուկ,— ասաց Թուքոն,— առանց այն էլ մենք ընդամենը երեքով ենք, հետո ես Դերային սիրում եմ, հետո...

Նա չվերջացրեց, երևում էր, որ հուզմունքից հիմա լաց կլինի:

Վերջապես Կարոն ասաց.

— Գնացինք գինետուն: Օգնող ձեռք, վերջին անգամ ստուգում ենք քո քաջությունը...

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

## ԳԻՆԵՏՈՒՆ

Շրջապատի խավարում միակ լուսավորն այդ նկուղի փոքրիկ պատուհանն էր: Ներսում «սա-

զանգակը» էր նվագում: Սանդ-սանդ, երբ բացվում էր նկուղի դուռը, լսվում էր անհասկանալի աղմուկ, շշերի ու բաժակների զնգզնգոց: Վերջին անգամ իմ քաջությունը փորձելու համար Կարոն ասաց.

— Օգնող ձեռք, դու աննկատ ներս կմտնես, կտեսնես, թե այնտե՞ղ է արդյոք էշերի կոշկակարը:


Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Սիրտս ծուլ-ծուլ եղավ: Ախր էշերի կոշկակարը ինձ ճանաչում է: Մի՞թե Կարոն մոռացել է, որ այն օրը նա հենց ինձ առաջարկեց արագ-արագ կրկնել շուտասելուկը:

— Ախր...

— Օգնող ձեռք,— ասաց Կարոն,— այս գինետունն օրական հազար խուժան է մտնում, վախենալու բան չկա, շատ-շատ, վզակոթից մի հատ կհասցնեն:

Նրանք երկուսով մնացին պատի տակ պպզած, ես վախվխելով գնացի դեպի դուռը: Բախտս բերեց: Հենց դուռը բացեցի, գինետան անկյունում տեսա էշերի կոշկակարին: Նա սեղանին հակված խոսում էր մի նիհար մարդու հետ:

Ես ինքս էլ կհեռանայի, ես արդեն վերջացրել էի գործս, և մատուցողն իզուր բռնեց օձիքիցս.

— Ի՞նչ ես ուզում, այ, խուժան:

— Բաց թող դրան,— ասաց մուրիկ սեղանի առաջ նստած հարբածը,— պուճուր ջան, տո,— նա օրորվելով երկու քայլ արավ ու խողովակաձև փաթաթված լավաշը քթուս խոթեց.— Ա՛ռ, ցավդ տանեմ:

Ես մեքենայորեն առա լավաշն ու դուրս թռա գինետնից, իսկ հարբածը հետևիցս ծիծաղեց.

— Մուկ է՞, տո՛, էսպես էլ խուժա՞ն կլինի...

Ես Քաջ բազուկի հանձնարարությունը փայլուն կերպով կատարեցի. Ես տեսա էշերի կոշկակարին, էշերի կոշկակարն ինձ չտեսավ, ես հետս բերեցի մի ամբողջ լավաշ, լոլարյարարով...

Պատի տակ պպզած հրամանատարը բարձր գնահատեց քաջությունս, երբ ուտելիքը կիսում էր, ասաց.

— Օգնող ձեռքը քաջ է, նրան ավելի շատ ուտե՛լ է հարկավոր,— ու մեծ պատառ մեկնեց ինձ:

Բայց ես հասկացա, որ բանն այստեղ ամենևին էլ իմ երկար քայլ չէր: Քաջ բազուկը գոհ էր ինձանից:

Մենք արդեն սառչում էինք: Իմ դալուկ բարեկամն առաջարկեց տաքանալու համար հերթով վազել: Նա առաջինը փորձեց, բայց դրանից բան դուրս չեկավ: Դեռ նոր էր սկսել վազել, երբ թաղի շներն այնպիսի աղմուկ բարձրացրին, որ հարևան բակից մի կին դուրս եկավ ու վախեցած ձայն տվեց.

— Ո՞վ է:

Իմ դալուկ բարեկամը ճչաց: Ես ու Քաջ բազուկը կպանք պատին:

Կինը փնթփնթաց, փնթփնթաց ու բակի դուռը շրխկացրեց:

Հենց այդ ժամանակ մենք լսեցինք էշերի կոշկակարի ծիծաղը.

— Հո՛, հո՛, հո՛...

Նա դուրս էր եկել գինետնից ու փողոցում զրուցում էր մեկի հետ:

— Ի՞նչ ես ձայնդ գլուխդ գցել,— ասաց նրա զրուցակիցը:

— Մի՛ վախենա,— պատասխանեց գնչուն,— էս ժամերին էս կողմերում մարդ չի լինում:

— Դու, համենայնդեպս, ցածր խոսիր:

— Լավ, մի՛ բարկանա:

— Ասում ես՝ համառո՞ւմ է:

— Համառում է: Ես Դումենկոյի անունն էլ տվի: Ի միջի այլոց, ի՞նչ կապ ունի նա Դումենկոյի հետ:

— Ո՞նց թե, նրա զինվորն է եղել:

— Դումենկոն՝ տասը հազար զինվոր ուներ:

— Հա, բայց տասը հազարից այս մեկն է փախել տանից: Նրա համհարզն է եղել, թե հետախույզ, չգիտեմ:

— Հիմա ի՞նչ անենք,— հարցրեց էշերի կոշկակարը:

— Պետք է նոր բան մտածել,— պատասխանեց խոսակիցը,— գուցե լակոտին գողանալ:

— Դա էլ ելք չի,— ասաց գնչուն,— դրան էլ երկու տարեկան հասակում վերցրել է էջմիածնից, գաղթականներից է:

Արևելքից գետեր:

Գիտեմ: Հետո երբ մեծացել է Դոնը, դրան ար-բանալ է ավելի իմ ազատ ձեռ:

Ասում ես, խնդրածին գազանային արդյունքը չի տա:

Կփորձեմ, բայց դժվար է պահելը, փոքր չի:

Դժվար է, բարեկամ խոսակիցը, դու ավելի դժվար բաներ ես արել, ավելի փոքր վարձով: Իսկ լսել եմ, Դոնի ճանապարհը ձեռ քեզ գնում:

Հետո՞ն ճամփա կտա՞ն որ, խաղաղ ճարպարեց գնչուն:

Ամեն գին է: Բա զարմ չի, ուղերը կտանեն այն կողմը:

Հետո...

Արդեն ասել եմ, ընկեր խոսակիցը, — ես չեմ ուզում, ձեռք բաշխր, ես մարդ կգտնեմ:

Մի՛ բարկանա, պատասխանեց Էշխի կոշկակարը, — դու գիտես, որ ինձ համար էլ հեշտ չի, հոգնել եմ այդ գնչուների մեջ:

Կատանես քո բանկիր ու բարի ճանապարհ:

Ես քեզ կօգնեմ այն կողմն անցնել, գնա քեզ համար բազարտական ապրիր, պարոն խրամատարան:

— Լավ, մի՛ ծաղրիր:

Ուրե՞մն:

— Կփորձեմ:

— Դե, գնա, որ անցնենք շատ էլ փափկանկատ մի՛ լինի, դու փորձ ունես:

— Ինչ ես ակնարկում:

Մի ժամանակ լավ խաղ խաղացիր: Անցի՛ այգին, ես անկեղծ ափսոսում էի նրան:

Բայց հենց դու կարգադրեցիր:

— Ճար չկար, կեղծ համաձայնեց խոսակիցը, — դու այնքան հզոր էիր, որ կհեր ճանաչել էր քեզ: Մի օր էլ ուշանային, խումբն արդեն կհամնար, որ դու պատասխանատու ես: Դե լավ, գնա:

Նրանք բաժանվեցին: Անծանոթը կրկին մտավ գինետուն: Էշխի կոշկակարը անցավ մեր մոտով և օրորվելով գնաց դեպի ծովի պուրակը:

(Շարունակելի)



# ԱՐՋՆ ՈՒ ՓԱՐՉԸ

ՀԱՅԿԱԶ ՄԵԼՅԱՆ



Բրուտի մոտ եկավ արջը
Ու պահանջեց.—Տո՛ւր իմ փարչը:
Դեռ ցավում է իմ աջ կողը.
Տրորել եմ կավահողը:
— Սո՛ւտ է,—ասաց ծեր բրուտը:
Արջը ցցեց իր մռութը.
— Ո՞նց թե սուտ է: Չե՞ս հավատում.
Կավահող կա մեր պուրակում:
Ամեն անգամ անց ու դարձիս
Մեջն եմ ընկնում ուղիղ մի թիզ:
— Որ այդպես է, քեզ որպես վարձ,
Քո ճաշակով ընտրիր մի փարչ:



Արջը դրեց փարչը հողին,
Դունչը հպեց փարչի կողին,
Ջուրը խմել՝ ինչ էլ արավ,
Չհաջողվեց. մնաց ծարավ:
Դժգոհ նայեց մարդուն արջը,
Ասաց.—Պետք չէ ինձ քո փարչը.
Կտրվում է նույնիսկ շունչս,
Ու չի հասնում ջրին դունչս:—
Բրուտն արջին պատասխանեց.
— Մի՛ դժգոհի, ա՛յ գլխամեծ,
Ջուր խմելու ձևն ու ելքը
Որոշում է միայն խելքը:

# ՄԻ ՍԻՐՈՒՆ ԲԱԼԻԿ

ՌԱՖԻԿ ՍԱՐԳՍՅԱՆ

Մի սիրուն բալիկ տխրել է անչափ.
Թաթիկն աչիկին՝ լալիս է տրտում.
Սևուկ աչքերի թախիծը անափ
Ինչպե՜ս պահի նա փոքրիկ իր սրտում:

Նրա հուզմունքը իմ աչքերի մեջ՝
Մոտենում եմ ես սիրուն բալիկին:
Եվ նա լալիս է, հեկեկում անվերջ՝
Արցունքի շիթը քնքուշ թաթիկին:



Պատռել են շորը փոքրիկ աղջկա.
Վախենում է, որ խոսի մայրիկը.
Երանի՜ մայրը չզղայնանա.
Ու լաց չլինի այս լավ բալիկը:

# ԴԵՊՔԵՐ ԴԵՄՔԵՐ ՏԱՐԵԹՎԵՐ

1866
1944

## ՌՈՄԵՆ ՌՈԼԱՆ



«Գետի աղմուկ...զանգերի ղողանջ... Այս երկու այնքան ծանոթ, ընգուն ձայներն էին նվագում Քրիստոֆի համար...»:

Երբ ուզում էի գրել ֆրանսիական ականավոր գրող Ռոմեն Ռոլանի մասին, «Ժան Քրիստոֆ» վեպից հիշեցի այս տողերը: Ինչո՞ւ հիշեցի, ինքս էլ չգիտեմ, թերևս այն պատճառով, որ իմ պատանության օրերին եմ կարդացել այդ զարմանալի վեպը ու մինչև այսօր էլ գետի աղմուկով, զանգերի ղողանջներով է մնացել այն իմ հիշողության մեջ:

«Ժան Քրիստոֆը» կենսագրական վեպ է, յուրատեսակ կենսագրությամբ, ուր և՛ Բեթհովենի, և՛ Միքելանջելոյի, և՛ ուրիշ շատ նշանավոր մարդկանց հավատամքը, սկզբունքներն ու ձգտումները, կենսագրական փաստերը խտացված են Ժան Քրիստոֆի կերպարի մեջ:

Այս գրքի կապակցությամբ Ռոմեն Ռոլանը մի առիթով ասել է. «Աշխարհը կործանվում է վախկոտ ու կեղտոտ անհատապաշտության խեղդուկի մեջ: Աշխարհը խեղդվում է, բացե՛նք պատուհանները, նե՛րս թողնենք ազատ հովը, թո՛ղ հերոսների շունչը օդափոխի մեզ»: Այո, այս գիրքը կարծես բաց պատուհան է, օդափոխություն՝ իր ժամանակի խեղդուկ մթնոլորտի համար: Ժան Քրիստոֆը դեպքերի պատմություն չէ, թեպետ և վեպում շատ դեպքեր են տեղի ունենում, սա երազանքների ոդիսականն է, ուր մարդկությանը բարություն անելու, լուսավորելու, նրա համար այրվելու երազանքներն են մեկիկ-մեկիկ կործանվում:

Բայց երբեք հուսահատությունը չի իշխում ոչ հերոսի և ոչ էլ ընթերցողի հոգու վրա: Մի տեսակ ծրագրային պայքարի կոչի նման է հնչում «Ժան Քրիստոֆի» առաջին հատորի վերջին խոսքերը. «...Սառը քամին սուլում էր նրա ականջներում...

— Փչի՛ր, փչի՛ր, ինչ ուզում ես ինձ արա: Տա՛ր ինձ, ես գիտեմ, թե ուր եմ գնում»:

Ժան Քրիստոֆը գիտեր, թե ուր է գնում: Նա կորուստների, երազանքների ոդիսականի միջով գնում էր դեպի լուսավոր հեռուները, գնում էր իրեն, իր արվեստը նվիրաբերելու ժողովրդին, գնում էր մարդուն ավելի ազնվացնելու, բարձրացնելու, մարդկային արժանապատվությունը փրկելու:

Ռոմեն Ռոլանը շատ գործեր է գրել: Նրա գրչին են պատկանում տասնյակ դրամաներ, կենսագրական վիպակներ ու մի քանի վեպեր, որոնցից «Կոլա Բրունյոնը» աշխատավոր մարդու գովքն է, մարդու, որն անսահման ժողովրդական սրամիտ պատմություններ ունի, գիտի փայտ մշակել, փայտի վրա հիանալի փորագրություններ կատարել ու սիրել կյանքը՝ արևով, լույսով ողողուն կյանքը:

Սա աշխատանքի գովք է, աշխատանքի, որը մարդուն գեղեցկացնում է, և որն այնքան պետք է սիրեք դուք, երեխաներ: Ի՞նչն է ավելի ազնվացնում մարդուն, եթե ոչ աշխատանքը: Այս վեպը ֆրանսիական հասարակ, բարի, աշխատասեր ժողովրդի նկարագիրն է, և Կոլա Բրունյոնը, որն այդ ժողովրդի զավակն է, յուրատեսակ, համահավաք կերպար է, էպոսային ստեղծագործություն: Նա իր կենսասիրությամբ մի անգամ ևս հաստատում է, որ ֆրանսիական ժողովուրդը անմահ է, որ նա արժեքներ է ստեղծում ու գեղեցկացնում կյանքը:

Ռոմեն Ռոլանի արձակը զարմանալի նուրբ և երաժշտական է, զանգերի ղողանջով ու գետի աղմուկով լեցուն: Եվ սա պատահական չէ, որովհետև մեծատաղանդ ստեղծագործողը նաև երաժիշտ էր: Նա իր ժամանակին լսել է մեր հայկական երգերը: 1913 թվականին Փարիզում ունկնդրել է անմահ Կոմիտասի կատարմամբ հայ ժողովրդական մեղեդիներն ու ասել. «Եթե ավարտած չլինեի «Ժան Քրիստոֆ» վեպը, (իսկ նա այն ավարտել է 1912 թվականին) ապա Բեթհովենի, Միքելանջելոյի և մյուս մեծ նախատիպերի հետ միասին Կոմիտասյան ոգին կգեղեցկացներ իմ Ժան Քրիստոֆին, որն իր մեջ բոլոր ժամանակների մեծ մտա-

ծողների և արվեստագետների հավատն ու կենսագրությունն ունիք:

Ափսոս, որ ավարտել էր նա իր վեպը և թեև ավարտել էր, բայց այնտեղ արդեն կար կոմիտասյան ոգին, որովհետև Կոմիտասը նման էր Ռոմեն Ռոլանի գրքին նախատիպ ծառայած աշխարհի խոշորագույն մտածողներին ու ստեղծագործողներին:

Ռոմեն Ռոլանը մեռավ 1944 թվականին, երբ Ֆրանսիան նոր էր ազատագրվել գերմանական ֆաշիզմի օկուպացիայից: Նա տեսավ իր հայրենիքի ազատության արշալույսը: Ժան Քրիստոֆի նման կորուստների ու երազանքների ողբերգության միջով հասավ հավատի, հույսի այն լուսավոր ափին, ուր գնում էին իր իսկ ստեղծած հերոսները:

Լրացավ մեծ գրողի ծննդյան հարյուր տարին:

*ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ*

*Մարդը պետք է հասկանա, որ ինքը աշխարհի ստեղծողն է ու նրա տերը, հասկանա, որ իր վրա է ընկնում երկրագնդի բոլոր դժբախտությունների պատասխանատվությունը, և որ իրեն է պատկանում նաև կյանքում եղած ամեն լավ բանի փառքը:*

*Կյանքի ողջ հմայքը ստեղծագործելու մեջ է: Ստեղծագործել՝ նշանակում է սպանել մահը:*

*Իր տունը փրկելու ամենալավ միջոցը ուրիշի տունը պաշտպանելն է:*

*Մեծ հոգին երբեք միայնակ չի լինում: Ճակատագիրը որքան էլ նրանից խլի իր բարեկամներին, նա վերջ ի վերջո միշտ այդպիսիք կստեղծի իր համար:*

*Ռ. ՌՈԼԱՆ*

# ԵՌՅԱԿԸ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

*— Ահա թե ուր եմ ընկել ես: Այ բախտավորությու՜ն,— բացականչեց երրորդ լամպը, երբ այն ամրացրին ջահին: Հետո շուրջը նայելով տեսավ իր նման արդեն երկու լամպեր ևս: — Բարև ձեզ, քույրիկներ,— դիմեց նրանց...*

*— Բարև,— պատասխանեց աջակողմյան լամպը,— պատկերացրեք, ինձ համար էլ հաճելի է, որ այստեղ եմ ընկել:*

*— Հետաքրքիր է իմանալ, ինչու՞ են մեզ այստեղ ամրացրել,— հարցրեց ձախ կողմում գտնվող լամպը:*

*Այդ ինձ համար են ձեզ բերել այստեղ, որպեսզի ես ավելի գեղեցիկ երևամ,— հպարտորեն միջամտեց ջահը:*

*— Իհարկե, մեզ հետ դու ավելի գեղեցիկ ես,— համաձայնեցին լամպերը:*

*— Իսկ դուք գիտե՞ք, թե ինչ էի առաջ և ինչպես դարձա էլեկտրական լամպ,— հարցրեց երրորդ լամպը:*

*Մինչև չպատմես, որտեղի՞ց կարող ենք իմանալ,— ասաց ջահը:*

*Ուրեմն, լսեցե՛ք,— սկսեց երրորդ լամպը:— Ես մի սովորական լուսամուտի ապակի էի և ամրացված էի նկարչի լուսամուտին: Այնքան էի ցեխոտված, որ իմ միջով լույս չէր թափանցում: Ես տեսնում էի, թե ինչպես են մաքրում դիմացի տան լուսամուտի ապակիները և ինչպես են նրանք փայլում, իսկ ինձ ոչ մի անգամ չէին մաքրում: Համենայն դեպս, չէի տրտնջում: Եվ ահա մի անգամ, երբ ձյուն եկավ, երեխաները սկսեցին խաղալ լուսամուտի առջև և ձնագնդով խփեցին ինձ. ես փշրվեցի: «Էհ, մնաս բարով, կյանք,— մտածեցի ես,— ինձ կնետեն աղբարկղը, և ես ընդմիշտ կկորչեմ»:*

*Բայց ինձ աղբարկղ չնետեցին, այլ գցեցին այնպիսի տեղ, որտեղ զանազան տեսակի ջարդված ապակիներ կային՝ շշեր, բաժակներ, լուսամուտի ապակիներ, սրվակներ: Եվ ահա մի անգամ մեզ հավաքեցին և ուղարկեցին գործարան: Այնտեղ մեզ լցրեցին մի տաք վառարան, որտեղ դարձանք հեղուկ՝ ճիշտ ջրի նման: Հետո մեզանից պատրաստեցին ապակյա փոքրիկ սրվակներ, ապա մենք ճանապարհորդեցինք գործարանում, մինչև որ դարձանք այն, ինչ տեսնում եք:*

*Մենք էլ ենք եղել այդ գործարանում և հալվել այդ նույն վառարանում,— ասաց աջակողմյան լամպը,— միայն թե մենք եղել ենք ոչ թե լուսամուտի ապակի, այլ գեղեցիկ ծաղկաման և զարդարել ենք մեր տիրոջ սենյակը, բայց փոքրիկ տղան անզգուշաբար ծաղկամանը վերցրեց սեղանից ու ջարդեց:*

*Էլ ինչ եք ուզում,— պարծեցավ ջահը,— ձեզ մնում է միայն ուրախանալ, որ կեղտոտ ապակուց և ջարդված ծաղկամանից հետո դարձել եք ինձ նման շքեղ ջահի զարդը:*

*Բայց այդ ժամանակ անջատիչը պտտեցրին և երեք լամպերը միանգամից վառվեցին՝ պայծառ լույսով ողողելով սենյակը: Իսկ լույսը վառող փոքրիկ աղջիկը նայեց ջահին և ասաց.*

*Այս ջահն ինչպե՜ս է զարդարում լամպերին:*

*Ահա թե ինչ, ջահ,— ասաց երրորդ լամպը,— ուրեմն՝ մենք եղել ենք գլխավորը, իսկ դու միայն զարդարում ես մեզ:*

*Ջահը լռեց. նա զգաց որ լամպերն իրավացի են:*




ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ

Մեր փոքրիկ քաղաքի ինկուբատորի կայանը շրջապատված է քարե բարձր պարիսպով։ Երկաթապատ դարպասի առջև, սալ քարին նստած պահակը միշտ քնած է, սակայն արթուն է նրա շունը՝ Զամբարը։ Եթե նկատում է դեպի ելքը շարժվող ճուտիկներին, գոմռոցով փախցնում է ետ։ Գոմռոցով ստիպում է ետ քաշվել նաև դարպասին մոտեցող չարաճճի մանուկներին։ Ուրեմն, Զամբարն աշխատում է, իսկ պահակը աշխատավարձ է ստանում։

Պարսպի ծախ անկյունում Զամբարի բույնն է՝ ցածլիկ, գետնին պպզած։ Բարակ մզզոց ասեմ, թե դեռևս անգրագետ կլանչոց է լսվում բնից։ Լակոտներն են, այո, իսկական շան լակոտներ։ Դեռևս հաչել չգիտեն, կարգին կլանչել չեն կարողանում։ Փոքր են, շատ փոքր։ Իսկ Զամբարն անհայտացել է, չկա։ Ես չոքում եմ բնի առջև, չանթում առաջին իսկ պատահած լակոտն ու, պո՜ւկ..., դեպի տուն։

Լակոտը դողում է ափերիս մեջ, կրծքիս վրա։ Աստված իմ, որքա՜ն լավն է՝ սև ոնչով, ճակատին սպիտակ խալ ունեցող այս շնիկը։ Ես խենթացել եմ ուրախությունից։ Ես ուզում եմ համբուրել նրա թաց ոնչիկը։ Մեր այգու պատի տակ ընկած է մի գերան։ Գերանի և պատի արանքում եղած լայն ճեղքը մի կողմից փակելով՝ խոտ եմ փռում մեջը, և բույնը պատրաստ է։ Տանից մի ափսե կաթ թռցնելը ոչ մի դժվարություն չի ներկայացնում։ Շնիկն ագահ է։ Նա լեզվով ասես մտրակում է կաթը, և ափսեն կամաց-կամաց դատարկվում է։ Իսկ երբ կշտացած ման է գալիս բնի առջև, ես ուրախությունից կորցնում եմ գլուխս։ Թմփլիկ, Բրդոտ շնիկը քայլում է՝ կողքե-կողք ընկնելով, օրորվելով, ինչպես մեր հարևանուհի Սաթոն։ Եվ որպեսզի կատուները չվնասեն իմ Բրդոտին, երեկոյան քարով ծածկում եմ բնի դուռը և նոր միայն գնում քնելու։

Արթնանում եմ արևից առաջ և վազում այգի։ Պարզվում է, որ Բրդոտն էլ է արթնացել։

— Բարի լույս, Բրդոտ...

— Մ ը ը ը... — բարևում է։

— Սոված չե՞ս...

— Մըըը... — այսինքն, իհարկե։ Մենք երկար, շատ երկար զրուցում ենք, և ես Բրդոտին պատմում եմ իմ իմացած ամենալավ հեքիաթները։ Տանեցիները շան երևալն ընդունում են դժկամությամբ։ Քեռիս մատով կտտացնում է ճակատիս.

— Ամեն տուն մի շուն ունենա բավական է, երկրորդն ավելորդ է...

— Իմը մեկն է, քեռի։

— Ի՞նչ ասեմ,, բալիկս, դու՝ շուն, էլ շունն ի՞նչ ես անում։

Չեմ նեղանում։ Պետք է ապացուցել քեռուս, որ թեև Բրդոտը շատ լավ շուն է, բայց մենք բնավ էլ ցեղակիցներ չենք։

— Թե որ շուն եմ, ո՞ւր է իմ պոչը...

Ծիծաղում է։

Դե, կտեսնես, ես այս տարի կգնամ դպրոց, իսկ Բրդոտին չեն ընդունի, որովհետև նա շուն է...

Ծիծաղում է.

Դե, դա ոչ մի նշանակություն չունի։ Շներին դպրոց չեն ընդունում, որովհետև նրանք զարգանում են ինքնակրթությամբ։

Ոչինչ չեմ հասկանում։ Քեռիս հեռանում է ծիծաղելով, չմոռանալով մի անգամ էլ հիշեցնել.

Լավ կանես, եթե էդ լակոտը ուրիշին տաս։

Ոչ, ես աշխարհը կտամ ուրիշին, Բրդոտին՝ երբեք։ Զարմանում եմ քեռուս վրա, որ նա չի սիրում Բրդոտին։ Մի՞թե չի տեսնում, թե նա ինչպես է շարժում իր փոքրիկ, կեռ պոչը։

— Բրդոտ ջան, ցավդ տանեմ։

Տատս բարկանում է վրաս.

— Ինչե՜ր ես դուրս տալիս, հիմա՛ր։ Ամեն տեսակ ցավ տանող տեսել էինք, բայց շան ցավը տանող չէինք տեսել...

Անցնում է ամառը, իսկ աշնանը ես արդեն դպրոց եմ գնում։ Դասերին նստած՝ կարոտում եմ իմ շանը։ Բրդոտը բավական մեծացել է, գեղեցկացել։ Իսկ մի օր նա հաչում է իսկական շան պես, շնավարի։ Արմանք-զարմանք բան։ Մենմենակ, առանց ուրիշի օգնության նա սովորել էր իր մայրենի լեզուն՝ հաչելը։ Ինչպե՞ս էր սովորել, ո՞վ էր սովորեցրել։ Գլուխ եմ ջարդում և չեմ կարողանում գտնել հարցի պատասխանը։ Հարցնում եմ քեռուս.

— Որ քեզ ասում էի, չէիր հավատում, պա-

տասխանում է ծիծաղելով, ասում էի, չէ՞, որ շները զարգանում են ինքնակրթությամբ, ինքնուս են:

Մի գիշեր Բրդոտը մինչև լույս կլանչեց ու ոռնաց: Տնեցիները ծայրահեղ անհանգստությամբ ընդունեցին նրա ոռնոցը:

— Լավ նշան չէ, — փսփսում է տատս՝ մորս ականջին:

Ինչո՞ւ են վախեցել տնեցիները, երբ շունը պարզապես լաց է լինում փորացավից: Ես դա շատ լավ գիտեմ, որովհետև երեկ Ռաֆիկը ապխտած ձուկ էր տվել Բրդոտին, իսկ նա ագահորեն կըլանել էր՝ փշերն էլ հետը: Առավոտյան արթնանալուն պես վազում եմ Բրդոտի մոտ և բույնը գտնում եմ դատարկ: Վազում եմ դես ու դեն, ստուգում պարտեզի յուրաքանչյուր ծառն ու թուփը, մարգերը, բայց Բրդոտը չկա:

— Ո՞ւր է իմ շունը, — լաց եմ լինում ես:

— Տեղյակ չեմ, — ասում է մայրս:

— Ի՞նչ իմանամ, — անգիտանում է տատս:

— Ես շան հետ գործ չունեմ, իմացա՞ր, — նեղանում է քեռիս:

Չէ, նրանք ինձ խաբել չեն կարող: Նրանք գիտեն իմ շան գլխին եկածը: Գիտեն, գիտեն, գիտեն, բայց չգիտեն, չեն հասկանում իմ վիշտը:

Ամբողջ օրը լաց եմ լինում, իսկ գիշերը երազում տեսնում եմ Բրդոտին՝ հալից ընկած և ինձնից նեղացած, նեղացած: Նա մարդկային լեզվով պատմում է իր վիշտը. «Տեսնո՞ւմ ես, ինչ օրի եմ ես: Իսկական շան հալի եմ: Եվ դու չես օգնում, չէ՞...» Ի՞նչ կպատահեր ինձ, չգիտեմ, եթե երրորդ առավոտյան չներկայանար իմ Բրդոտը: Նա տուն դարձավ՝ փայլը կորցրած, գզգզված բրդով և ցամաքած ու ներս փլված կողերով: Միայն աչքերն էին ուրախ և չար էր քեֆը, որովհետև շարժում էր իր փնջավոր պոչը:

— Բրդո՛տ ջան, սիրո՛ւն ջան...

Քեռիս շան վերադարձի լուրը լսում է զարմանքով.

Գցել էի ձորի ցամաքած ջրհորը: Ինչպե՞ս է դուրս եկել, ո՞վ է հանել:

Բրդոտն արդեն իսկական շուն է: Նա նույնիսկ տառապանքներ է տարել, արկածներ ունեցել: Տատս գտնում է, որ շունն արդեն չափահաս է և պետք է որ զբաղվի որևէ գործով:

Վարժեցրու, թող այգուց քշի մեր և հարևանների հավերին, որոնք քուջուջ են անում թարխունի և սոխի մարգերում:

— Բրդոտ, հասի՛ր, — մատով ցույց եմ տալիս մարգերի սահմանները խախտողներին:

Հա՛ֆ, — թռչում է Բրդոտը: Մի քանի օրում նա վերջնականապես լուծում է մեր այգու անձեռնմխելիության հարցը: Լա՛վ աշխատավոր է Բրդոտը:

Գալիս է ամառային արձակուրդի օրերը: Բրդոտն ահագին շուն է դարձել: Նա այժմ ամեն օր ուղեկցում է ինձ: Պոչը մեջքին կեռ տված, վազում է կողքիցս՝ երջանիկ ու պատրաստակամ:

Սկսվում է լողի սեզոնը: Առաջին անգամ ինձ ալիքների մեջ տեսնելով, Բրդոտը լեղաճաք է լինում վախից: Ցավագին ոռնոցով նա նետվում է գետը, և ջրում ես զգում եմ նրա հպումն իմ մարմնին և լսում տագնապած վնգստոցը: Դուրս ենք գալիս ափ: Պառկում է ոտքերիս տակ և լիզում ձեռքերս:

— Վախեցար, հա՞...



Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Հա՛ֆ, — պատասխանում է նա, այսինքն՝ հա՛, վախեցել եմ:

— Քո վախի պատճառով ես չեմ կարող զրկըվել լողանալուց, ընկեր Բրդոտ...

— Մըըը՛... — մզզում է նա: Այսինքն՝ դու գիտես, բայց ես վախենում եմ քեզ համար:

Ջրում ուղեկցելը ևս դառնում է սովորություն: Լողանում եմ, և ինձ հետ է նաև Բրդոտը: Երբ գնում ենք Կուլիկամի ջրվեժը և ես մտնում եմ ջրի հաստ շիթի տակ, նորից կողքիս է Բրդոտը: Կառչում եմ քարերից, որպեսզի ջուրն ինձ չտանի: Բրդոտը նույնն անել չի կարողանում և նրա

համար ջրվեժի տակ լողանալը դառնում է տանջանք ու չարչարանք։ Ջուրը քարերին խփելով, քշում է նրան ներքև, բայց նա գլխակորույս արագությամբ նետվում է ափ, որպեսզի նորից մտնի ջրվեժի տակ։ Նրա խաթրու, ես ավելի հազվադեպ եմ լողանում ջրվեժի տակ, որպեսզի չչարչարվի իմ Բրդոտը։

Թեժ արևի տակ պղնձե գույն են ստացել ժայռերը։ Տաքացել են գետափի քարերը, ավազը։ Ջրից դուրս գալով պառկում ենք քարերին և վառում մեր մարմինները։ Ես երբեք չեմ մոռանա այդ օրը, իմ Բրդոտի կյանքի վերջին օրը։ Ես դուրս եկա գետից և քայլում էի դեպի տափակ, սալ քարերը, երբ հանկարծ Բրդոտը, ոզնու փշերի նման վզի մազերը ցցած, նետվեց ոտքերիս տակ։ Նոր միայն նկատեցի քանդվող և գալարվող օձը։ Վախից ու զարմանքից լայնացած իմ աչքերի առաջ, շան և սողունի միջև բռնկվում է մի թեժ մարտ, որը տևում է երևի մեկ-երկու րոպե։ Սողունն ընդունում է շան մարտահրավերը և թունավոր երախը բաց, նետվում նրա վրա։ Շունը հարվածում է թաթով։ Գլուխը թեթևակի վեր պարզած, սողունն անցնում է հարձակման։ Նետվում և դիպչում է շան վզին։ Շունը կլանչում է, սակայն հախռում և ծամում է նրա վիզը, իսկ մենք քարերով ջախջախում ենք օձի թունավոր գլուխը։ Խե՜ղճ, խե՜ղճ Բրդոտ, կյանքի գնով փրկեց իմ կյանքը և հիմա ոտքերիս մոտ պառկած, լալիս է ու նվում։ Թախծոտ են նրա շնային բարի աչքերը։

— Բրդոտ, կծե՞լ է քեզ...

— Մըը՜ը... — լալիս է։ Շուտ-շուտ թաթը տանում է դեպի վիզը, ասես ականջից ճանճ է քշում։ Տուն գնալիս նա չի կարողանում բարձրանալ տեղից և նրան ես տուն եմ բերում գրկած։ Տատիս պատմում եմ եղելությունը։ Նայում է.

— Վիզն ուռել է։ Կծել է խեղճին։ Շունդ չի ապրի, բալիկս...

Սկսում եմ տզզալ։ Իսկ Բրդոտը բնի առջև պառկած թույլ նվում է։ Նա արդեն չի նկատում մեզ։ Չի նկատում ինձ։ Կիսախուփ և խամրած են աչքերը։ Մի վայրկյան մտնում եմ տուն և, երբ վերադառնում եմ այգի, Բրդոտին չեմ գտնում այնտեղ։ Փնտրում եմ, չկա։

— Բրդոտը չկա, տատի։

— Գնացել է սատկելու, բալիկս, շունը երբ զգում է օրհասը, հեռանում, կորչում է տնից։ Պետք է գտնել խեղճ հայվանին, — վշվշում է տատս, — նրա արյունը հիմա օձի լեղի է դարձել, թունավոր ժանգաջուր։ Պետք է գտնել և խորը, շատ խորը թաղել...

Ես չգտա իմ Բրդոտին, իմ մանկության խաղընկերոջը, իմ անձնվեր բարեկամին։ Չգտա, բայց երբեք էլ չմոռացա իմ Բրդոտին, չմոռացա։

ԻՆՉՈՒԿ

ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԱԿՈՒՄԲ

ԻՆՉՈ՞Ւ ԵՐԲ ՈՐՏԵ՞Ղ

# ԴԵԼՖԻՆՆԵՐԸ ԽՈՍՈՒՄ ԵՆ



Մարդու ուղեղը



Դելֆինի ուղեղը

Այս դեպքը տեղի է ունեցել Ֆլորիդայում։ Մի կին, որը լող տալով բավական հեռացել էր ծովափից, հանկարծ ուժեղ հոգնածություն զգաց, ուժերն սպառվեցին։ Սկսեց սուզվել։ Խեղճ կինն, անշուշտ, կխեղդվեր, եթե օգնության չհասնեին։ Նա զգաց, թե ինչպես ներքևից մի քանի անգամ հրեցին իրեն և վեր բարձրացրին։ Կինը փրկված էր։ Բայց պարզվեց, որ փրկարարը ոչ թե մարդ էր, այլ... դելֆին։

Ամերիկյան հոգեբան-ֆիզիոլոգ Ջոն Լիլլին մի ամբողջ գիրք է գրել դելֆինների մասին։ Նա բազմաթիվ ուսումնասիրություններ ու փորձերի հիման վրա

**1939** թվականին դանիական Ճյեզվիգ քաղաքում վերանորոգում էին մի հին եկեղեցի և սվաղի շերտի տակ հայտնաբերեցին շատ հաջող նկարված հնդկահավերի ութ պատկեր։ Նկարիչը, անտարակույս, հնդկահավեր տեսել է, մինչդեռ այդ թռչունը Ամերիկայից Եվրոպա է ընկել ոչ շուտ, քան 1530 թվականը։ Հապա որտեղի՞ց կարող էր Դանիայում 13-րդ դարում հնդկահավ հայտնվել։ Արդեն, Կոլումբոսից շատ առաջ ինչ-որ կապե՞ր են եղել Եվրոպայի և Ամերիկայի միջև։

Աղմուկ՝ բարձրացավ Ճյեզվիգի հնդկահավերի մասին, նրանց նկարները հայտնվեցին գիտական ամսագրերի և դասագրքերի էջերում։ Եվ հանկարծ բոլորովին վերջերս պարզվեց, որ հռչակավոր հնդկահավերը մեր դարի նկարիչի ստեղծագործությունն է։ Տաճարը վերանորոգելիս վնասվեց պատերը

եկել է այն եզրակացության, որ կենդանական աշխարհում ամենախելացին դելֆինն է։ Ֆլորիդա թերակղզու Մայամի ծովափնյա քաղաքում դոկտոր Լիլլին կազմակերպել է հատուկ լաբորատորիա, ուր արդեն մի քանի տարի է, ինչ հետևում և ուսումնասիրում է դելֆիններին։

Մի անգամ Լիլլին վիրավոր դելֆինին բաց թողեց ջրավազանը։ Կենդանու մարմինը ծռմռված էր, պոչի լողակը չէր աշխատում։ Սկսեց սուզվել՝ տալով աղետի ազդանշան։ Նույն պահին նրա մոտ շտապեցին ազգակիցներից երկուսը, որոնք խկույն բռնեցին կողքերից և ջրի տակից վեր հանեցին։

Դելֆինները շատ ուժեղ են, իրենց սուր ատամներով նրանք հեշտությամբ ծվատում են հսկայական շնաձկներին։ Այնպես որ մարդուն հոշոտելը նրանց համար հասարակ բան է, բայց նրանք մարդու վրա չեն հարձակվում։ Լիլլիի դելֆինները շատ բարեհոգի են իրենց վրա փորձեր կատարողների նկատմամբ։ Սպլյոշ անունով դելֆինը հաճախ Լիլլիի գրեթե ամբողջ ձեռքը շրթունքներով զգուշորեն տանում էր իր երախը։ Եվ ամեն անգամ ձեռքը դուրս քաշելուց հետո Լիլլին լսում էր, որ Սպլյոշը մարդկային ծիծաղի նման-

վող հնչյուններ է արտասանում։ Դելֆինները հետաքրքրասեր, աշխույժ և խաղեր սիրող կենդանիներ են։ Իսկ նրանց ընտելացնելը պարզապես զարմանք է պատճառում։ Բավական է դելֆինին երկու-երեք անգամ ցույց տալ այն, ինչ ուզում են սովորեցնել, որպեսզի նա իսկույն յուրացնի։ Ավելի շուտ են սովորում, քան կապիկները։ Դելֆինները ճարպկորեն բռնում են իրենց կողմը նետած ուտելիքը, վարժեցրած շների նման ցատկում են թղթով պատած օղակի



միջով, գնդակը դիպուկ կերպով նետում են բասկետբոլի զամբյուղը, ետ են բերում ջուրը նետած իրը, լսում են երաժշտություն։ Նրանք ժամերով, երախները բաց, պառկում են սեղանին և ենթարկվում մարդկանց, երբ սրանք գիտական նպատակներով ստիպված են լինում ռեսպիրոմետր ամրացնել նրանց շնչառական օրգաններին կամ ժամանակավորապես կուրացնել աչքերը։

Լիլլին պարզեց, որ դելֆինները խոսում են իրար հետ, բայց նրանց արձակած ոչ բոլոր ձայներն են, որ կարողանում է որսալ մարդու ականջը։ Դրա համար գիտնականը ջրավազաններում տեղադրեց ուլտրաձայնային միկրոֆոններ, հիդրոֆոններ ու բարձրախոսներ։ Լաբորատորիայում նստած՝ նա լսում

էր, թե ինչ է կատարվում ջրավազաններում, իսկ դելֆինները լսում էին, թե ինչ է կատարվում լաբորատորիայում։ Դելֆինների արձակած ձայները գրանցվեցին մագնիտաֆոնի ժապավենի վրա։ Եվ ահա մի անգամ մագնիտաֆոնը սխալմամբ միացրին մի քանի անգամ ցածր արագությամբ, քան պահանջվում էր։ Հետազոտողները չհավատացին իրենց ականջներին. դելֆինները արտասանում էին անգլերեն բառեր։ Ահա թե մի անգամ ինչ պատահեց. Բեքի և Լիզզի անունով դելֆինները սկզբում ապրում էին միևնույն ջրավազանում։ Լիզզին ծանր հիվանդացավ, հրաժարվեց ուտելուց։ Նրան փոխադրեցին ուրիշ ավազան. պարզ էր, որ երկար չէր ապրելու։ Ինչ-որ մի անգամ նրա ներկայությամբ ենթադրություն էին արել, որ Ջոն Լիլլին կարող է ընթրիքից ուշանալ, քանի որ ժամը վեցն է։ Եվ ահա ավազանից լաբորատորիայում նստածների ականջին հասավ դելֆինյան արտասանություն։ Իսկույն միացրին մագնիտաֆոնը. ժապավենի վրա պարզ ձայնագրվել էին Լիզզիի արտասանած բառերը. ժամը վեցն է։ Հետևյալ օրը դելֆինն այլևս կենդանի չէր, և մարդիկ չկարողացան պարզել՝ Լիզզին ընդօրինակել էր լաբորատորիայի մարդկանց խոսակցությո՞ւնը, թե՞ անգլերեն էր թարգմանել իր սեփական միտքը։

Լիլլիի կարծիքով, հնարավոր է հասկանալ դելֆինների «լեզուն», և եթե փոխադարձ կապ ստեղծվի նրանց ու մարդու միջև, դելֆինների օգնությամբ մենք մեծ չափով կընդարձակենք մեր գիտելիքների սահմանները։ Դելֆինները կփոխարինեն տասնյակ օվկիանոսաբանական էքսպեդիցիաների, օգնությամբ կհասնեն նավաբեկյալներին, կհայտնաբերեն խորտակված նավերի տեղը։

գեղեցկացնող մի նմագույն զարդանկար: Կարպետը վախեցավ արվեստի հնագույն հուշարձանը փչացնելու պատասխանատվությունից և շտապեց ուղղել վնասվածքը, քանի դեռ այդ ով որ չի նկատել: Բայց նկարիչը չէր հիշում, թե ինչ էր նկարված միջնադարյան արձանագրում և ազատություն ավեց իր սեփական երևակայությանը: Այդպես տաճարի պատերի վրա առաջացան նեղկանավեր:







# Անվանի շախմատիստի ԴԱՍԵՐ

դասախոսում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

## ՆԱՎԱԿԱՅԻՆ ՎԵՐՋՆԱԽԱՂ

Դուք արդեն գիտեք, որ պայքարի ընթացքում արքայի վրա ուղղակի գրոհով հաջողության հասնել կարելի է ոչ միշտ: Հաճախ խաղը հանգեցվում է վերջնախաղի, որտեղ հակառակորդներից մեկն ունի փոքր նյութական առավելություն՝ մեկ ավելի զինվոր: Քննարկենք մի շարք օրինակներ, երբ նավակը և զինվորը պայքարում են միայնակ նավակի դեմ:



Այստեղ դուք տեսնում եք ուժերի նման հարաբերակցության կարևոր դիրքերից մեկը: Թույլ կողմի արքան դիրք է գրավում հակառակորդի զինվորի ճանապարհին, իսկ զինվորը դեռ բավականաչափ ակտիվ չէ: Այս և նման դրություններում ուժեղ կողմը (տվյալ դեպքում սպիտակները) խաղը շահել չեն կարող, եթե միայն մրցակիցը ճիշտ պաշտպանվի: Դրա համար պետք է հիշել, որ ստորև պատկերված դիրքում սպիտակները հաղթում են:



Այս դիրքում խաղը շահելու ընորոշ պայմաններն են՝

1. Սև արքան ութերորդ հորիզոնականի վրա մեկուսացված է:

2. Սև նավակը ստիպված է հսկել ութերորդ հորիզոնական գիծը և պաշտպանել իր արքային մատային սպառնալիքներից:

3. Սպիտակ զինվորը հասել է վեցերորդ հորիզոնականին:

4. Սպիտակ արքան պաշտպանված է իր զինվորով՝ թևի շախերից:

Անհրաժեշտ է հիշել, որ տվյալ հանգամանքներում սպիտակները խաղը շահում են, եթե զինվորը գտնվում է «c», «d», «e» և «f» ուղղաձիգ գծերի վրա: Իսկ եթե զինվորը գտնվում է «a», «b», «g» և «h» ուղղաձիգների վրա, ապա խաղը պետք է ավարտվի ոչ-ոքի արդյունքով:

Դիագրամ №2-ի դրությամբ սպիտակները հաղթում են պարզ կերպով:

1. Նh7 (մատ սպառնալով h8-ի վրա) Աg8 2. f7+ Աf8 3. Նh8 և այլն:

Ուշադրություն դարձրեք սպիտակ արքայի վրա: Եթե նա կանգնած լիներ «e6» դաշտում, ապա խաղը ոչ-ոքի կավարտվեր: Օրինակ՝ 1. Նh7 Նa6+ 2. Աf5 Նa1 3. Աg6 Նg1+! և թիկունքի շախերով սևերը փրկվում են:

Վերադառնանք №1 դիագրամին: Այժմ գիտենք, թե որն է դիրքի էությունը՝ պարզ է, որ սպիտակները պետք է ձգտեն ստանալ №2 դիագրամի դիրքը, իսկ սևերը պետք է խանգարեն դրան:

Զիջելու և պարտություն չկրելու համար թույլ կողմը պատահական քայլեր չպետք է կատարի: Անհրաժեշտ է իմանալ տվյալ իրավիճակի պաշտպանության մեթոդը և բոլոր քայլերը ենթարկել այդ մեթոդի իրականացմանը: Առավել պարզ ու ճիշտ մեթոդն է՝ նավակով մանրել 6-րդ հորիզոնականով, հսկելով, որպեսզի արքան չգրավի այն: Հենց որ սպիտակ զինվորը քայլեց 6-րդ գիծը, սև նավակը անմիջապես պետք է իջնի ցած, որպեսզի հնարավորություն ստեղծվի շախեր հայտարարել թիկունքից:

Նայեցեք, թե ինչպես է այդ ստացվում գործնականում. 1... Նa6 2. e5 Նb6! 3. e6 Նb1 (սևերի պաշտպանության «բանալին») 4. Աf6 Նf1+ 5 Աe5 Նe1+ 6. Աd6 Նd1+ և այլն:

Անհրաժեշտ է նաև նշել, որ եթե սպիտակները փորձեն գրավել 6-րդ գիծը մինչև զինվորի առաջ շարժելը (Նh7-g7-g6 մանևրի ու փոխանակումից և արքայով e7 դաշտը գրավելուց հետո), նույնպես ոչ-ոքի կստացվի:

Քննարկենք մի այնպիսի դեպք, երբ ուժեղ կողմին (սպիտակներին) հաջողվում է ստանալ նպաստավոր դիրք՝ հակառակորդի արքան կտրված է անցողիկ զինվորից:



Այստեղ սպիտակներից մեծ ջանք չի պահանջվի զինվորը առաջ շարժելու համար:

1. Աh6 Նh2 2. Աg7 Նa2 3. g6 և այլն:



Այստեղ խաղը հետևյալ կերպ կարող է զարգանալ: 1. Նe1 Աd7 2. Նe4 (եթե այդ քայլի փոխարեն սպիտակ արքան դուրս գար «g8» դաշտից՝ 2. Աf7, ապա սևերը նավակով անընդհատ շախ կհայտարարեին 2... Նf2 3. Աg6 Նg2 4. Աh7 Նh2 և այլն): Խաղը շահելու համար սպիտակ արքայի և նավակի գործողությունը պետք է կոորդինացնել: Ահա դրան էլ ծառայում է առաջին հայացքից «անհասկանալի» 2. Նe4 քայլը: 2... Նh1 3. Աf7 Նf1 4. Աg6 Նg1 5. Աf6: (Այժմ եթե սևերը մեկ շախ ևս հայտարարեն՝ 5... Նf1 , ապա կհետևի 6. Ա 5 Նg1 7. Ն 4! Ահա թե ինչու էր պետք սպիտակ նավակի հայտնվելը 4-րդ հորիզոնականի վրա): 5... Նg2 6. Նe5! Այստեղ արդեն ամեն ինչ պարզ է: Սպառնում է 7. Նg5 և սպիտակ զինվորը անցնում է թագուհի: Սևերը պարտվում են:

Սակայն, երբ զինվորը հասել է 7-րդ հորիզոնականին, միշտ չէ, որ ուժեղ կողմը հաղթում է:



Իրենց քայլի դեպքում սևերը ոչ-ոքի են անում. 1... Նa8+ 2. Աd7 Նa7+ 3. Աd6 Նa6+ 4. Աd5 Նa5 5. Աd6 Նa6+. ոչ-ոքի:

Պաշտպանության ժամանակ սևերից պահանջվում է ճշտություն: Հինգերորդ քայլում՝ 5. Աc6-ի միջոցով սպիտակները կարող են «ծուղակ» սարքել: Այժմ 5... Նe5 քայլը վատ է, որովհետև սպիտակները կպատասխանեն 6. Աd6, այնուհետև Նf8, և սևերը պարտվում են: Ճիշտ քայլն էր 5... Նa6+: Իսկ եթե 5. Աc4, ապա 5... Նe5 քայլը միանգամից ոչ-ոքի է անում: Տվյալ դեպքում, ինչպես ընդունված է ասել, սևերին փրկեցին «երկար» կողմի շախերը: Այսպես է կոչվում պաշտպանության այն մեթոդը, երբ նավակի և արքայի մեջ եղած տարածությունը մեծ է (տվյալ դեպքում երեք ուղղաձիգ):

Մենք արդեն ծանոթացանք թիկունքից և թևից շախերի միջոցով պաշտպանության բնկրզրունքի երկու օրինակի հետ:

Քննարկենք նավակի ճիշտ օգտագործման մի օրինակ ևս:



Տվյալ դեպքում սևերի դրությունը բավականին «տխուր» է թվում: Նրանց արքան շատ հեռու է մրցակցի անցողիկ զինվորից: Թվում է, թե սպիտակների համար դժվար չի լինի զինվորը աստիճանաբար առաջ շարժել: Իրոք, եթե սևերը փորձեն գործադրել պաշտպանության ծանոթ ձևերը (թևից նավակով գրոհելով մրցակցի արքային, իսկ զինվորը առաջ շարժելու դեպքում նավակով անցնել թիկունքը), ապա սպիտակները առանց դժվարության կկարողանան զինվորը հասցնել 7-րդ հորիզոնականին, այնուհետև օգնության կհասնի նավակը, և սպիտակները խաղը կվճռեն իրենց օգտին:

Սակայն սևերը իրենց քայլի դեպքում խաղում են 1... Նb8! և եթե սպիտակները արքայով փորձեն առաջ քայլել, ապա հաջողության չեն հասնի:

2. Աa2 Նa8+ 3. Աb3 Նb8+ 4. Աc3 Նc8+ 5. Աd4 Նd8+ 6. Աc5 Նc8+ 7. Աd6 Նb8! 8. Նb1 Նb3 9. Աc5 Աe6 10. Աc4 Նb8 11. b4 Աd6 և այլն:

Նավակային վերջնախաղերի (նավակը՝ նավակի և զինվորի դեմ) ելքը կախված է այն բանից, թե ինչպիսի պաշտպանական հնարավորություններ ունի թույլ կողմի նավակը և որքանով ճիշտ են օգտագործվում այդ հնարավորությունները:

Տ. Պետրոսյան

# ԿԱՏԱԿԱԽԱՂ

(Պապիս պատմածներից)

ՍԵՐԳԵՅ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ջրաղացպան էի: Ջրաղացն աշխատում էր օր ու գիշեր: Երեք օրը մեկ սրում էի ջրաղացքարը: Սենյակն էր, դրա համար էլ օգնության կարիք չէի զգում: Գոհ էին մարդիկ՝ ջրաղացի այցելուները: Լավ էր, այդ տարի և՛ բերքն էր առատ, և՛ ջուրը շատ: Օրերից մի օր, կեսօրին ջրաղացը կանգ առավ: «Ինչ պատահած կլինի».— մտածեցի ես ու նայեցի ներքև: Ամեն ինչ տեղում էր, միայն ջուրն էր պակասել: Անհոգ դուրս եկա ու շարժվեցի դեպի վեր: Մի քանի քայլ անելուց հետո զարմանքից քարացա: Իրականությո՞ւն էր, թե՞ երազ: Մի քանի անգամ էլ բացուխուփ արեցի աչքերս: «Չէ, երազ չի, աչքերս էլ չեն դավաճանում».— ասացի մտքումս:

Մի հսկա արջ՝ ջրի առուն քը մտած, լողանում էր: Առջևի թաթերով այնպես էր ջուր լցնում վրան, կարծես իսկական մարդ լիներ, դրանից էլ ջուրը պակասել էր:

— Ա՛յ ժողովուրդ, մի դե՞ս եկեք, եկեք տեսեք ի՞նչ է կատարվում,— կանչեցի ես:

Հավաքվեցին ջրաղացի մոտ ու մոտակա այգիներում աշխատող մարդիկ: Ես էլ ավելի մոտեցա արջին ու ասացի.

— Ա՛յ հայվան, դո՞ւրս կորի առուից ու գնա, գնա, շատ ու խերդ քաշի ինձանից, թե չէ վառ օրին կխաղամ գլխիդ:

Տեսա, որ բան չի դուրս գալիս, ոտ առա, թռա ընկա ջրի մեջ ու բռնեցի արջի կոկորդից: Նա էլ բռնեց: Հետո անջատվեցինք ու իսկական կռիվ բռնվեցինք: Ես նրան էի գետնում, նա՝ ինձ: Ժողովուրդն ապշած նայում էր: Տեսան, որ դադանը պիտի հաղթի, ո՞վ քար, ո՞վ դագանակ վերցրեց:

— Դուք ձեռ չտաք,— խնդրեցի ժողովրդին և հարմար առիթ որոնելով՝ գետնեցի արջին: Բայց հանկարծ գազանը մարդավարի սկսեց խոսել.

— Աիպեր, սպանիլ մի, խեղդիլ մի, ես Սիմո՛նն եմ, Սիմո՛նը...

Բաց թողեցի: Դե, ո՞վ չէր ճանաչում կատակասեր Սիմոնին:

Ասում են, տարիներ հետո նման մի կատակախաղի ժամանակ արջի տեղ սպանեցին Սիմոնին:

Այ քեզ կատակխա՞ղ...





ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ հոկտեմբերիկների համար**


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (պատասխանատու խմբագիր), ԵՈՍՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06,

ՎՖ 10398, Պատվեր՝ 2759, Տպաքանակ՝ 22 200, Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 4/1. 1966 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 20 կ.




ԽԱՂԵՐ
ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻ
ՀԱՄԱՐ




# ԲԼՐԱԿԻ ՎՐԱ

Երբ երեխաները սահում են բլրակներից, դուք, պիոներներդ, կարող եք նրանց համար կազմակերպել շատ հետաքրքիր խաղեր։

Բլրակի ներքևում դրեք մի դրոշակ, երեխաներին տվեք հանձնարարություն, որպեսզի սահելու ժամանակ պարզեն ձեռքը և ձյան միջից դուրս քաշեն դրոշակը։

Երեխաների համար պատրաստեք ձնագնդեր և համապատասխան բաժանեք խաղացողներին։ Բլրակից սահնակով իջնելիս երեխաները ձնագնդով պետք է խփեն բլրակի ներքևում կանգնած ձնե պապիկին։ Հաղթում է նա, ով ավելի շատ ձնագունդ է հասցնում նպատակակետին։

Կարելի է կազմակերպել սահնակներով էստաֆետա։ Երեխաներին կանգնեցրեք երկու շարքով, իրարից 5—10 քայլ հեռավորության վրա։ Շարքերից 10—12 քայլ հեռավորության վրա գիծ քաշեք և նրա վրա ցից խփեք։ Ղեկավարի ազդանշանով շարքի յուրաքանչյուր երկրորդը սահնակ է նստում, իսկ առաջինը քաշում է նրան մինչև գիծը, շրջանցում ցիցը և արագ վերադառնում։ Հասնելով իրենց շարքին, այս երկուսը սահնակը հանձնում են հետևյալ զույգին։ Այս զույգի երկրորդ երեխան նստում է, իսկ առաջինը քաշում է և այդպես շարունակ։ Հաղթում է այն շարքը, որի վերջին զույգը առաջինն է վերադառնում։

Խաղը կրկնելիս զույգերը փոխում են տեղերը։

### ՔԱ՞ՆԻ ՁՈՒ ԿԱՐ

Մի կին կամբյուղով ձու էր տանում շուկա։ Անցորդներից մեկը անզգուշորեն հրեց նրան, կամբյուղն ընկավ, և ձվերը կոտրվեցին։ Ցանկանալով հատուցել կորուստը, մեղավորն ասաց.

— Ընդամենը քանի՞ ձու կար կամբյուղի մեջ։

— Ստույգ թիվը չգիտեմ,— պատասխանեց կինը,— բայց գիտեմ, որ երբ հանում էի 2-ական, 3-ական, 4-ական, 5-ական, կամ 6-ական ձու, կամբյուղի մեջ մնում էր 1 ձու, իսկ երբ հանում էի 7-ական, ոչ մի ձու չէր մնում։

Զամբյուղի մեջ քանի՞ ձու կար։

## ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ





Հին Եգիպտոսում մումիաների վրա դնում էին հանգուցյալի դիմանկարը՝ նկարած տախտակի վրա։

Առաջին անգամ այդ դիմանկարները հայտնաբերեցին 1887 թվականին։ Հետագայում բազմաթիվ նման դիմանկարներ հայտնաբերվեցին, որոնք լինելով արվեստի գլուխ-գործոցներ, այժմ սփռված են աշխարհի բոլոր լավագույն պատկերասրահներում։

Ո՞ր օազիսում առաջին անգամ հայտնաբերվեցին այդ դիմանկարները և ինչպե՞ս են նրանք կոչվում։

Սա Նեֆերտիտի թագուհու դիմաքանդակն է։ Ձեզ ծանոթ է նաև նրա մեկ ուրիշ, շատ տարածված դիմաքանդակը։

Կարո՞ղ եք ասել, թե այս դիմաքանդակը ո՞ր դարի և ո՞ր ժողովրդի արվեստի նմուշ է։

